


# ՄԵՐ ԳԵՐԲԸ

*Ս. ՄԱՐՇԱԿ*

Ամեն մի տերություն ձևով իր ցանկացած
Նախշում է, զարդարում իր գերբը պետական,
Ահեղ առյուծն ահա թաթերին ծառացած,
Ահա երկգլխանի թռչունների արքան:

Այդպիսին է եղել սովորությունը հին—
Որպեսզի պետական այդ գերբերից բոլոր,
Գազանն ահաբեկեր իր հարևաններին՝
Բաց արած իր ճերմակ ժանիքներն ահավոր:

Գիշատիչ մի գազան կամ թռչուն չարանենգ,
Որ կորցրել են իրենց պատկերը սեփական,
Սեղմում են ճանկերում ահեղ մի սուր, կամ տեգ՝
Ու ցասկոտ նայում այդ գերբերից պետական:

Սակայն մեր տերության գերբը չի զարդարված
Առյուծի կամ արծվի ահեղ պատկերներով,
Այնտեղ հզոր մուրճն ու մանգաղն են նկարված,
Որ շրջապատված են ցորենի հասկերով:

Ոչ, մենք չենք սպառնում այլ ժողովուրդների,
Սակայն պահպանում ենք Հայրենիքը մեր մայր,
Որի երկնքի տակ տեղ կա այն բոլորին՝
Ովքեր որ ապրում են աշխատանքով արդար:

Ու երբեք չի կարող թշնամին խորտակել
Մեր ժողովուրդների եղբայրությունն հզոր,
Անբաժանելի են մուրճն ու մանգաղը մեր,
Մեր հողը, մեր հասկը, մեր աստղը լուսավոր:




*Կոմունիստական պարտիայի գործի պայքարին եղի՛ր պատրաստ*

№ 11

ՆՈՅԵՄԲԵՐ

1954 Թ. ՀՐԱՏԱՐԱԿՈՒԹՅԱՆ 26-ՐԴ ՏԱՐԻ

ՀԼԿԵՄ ԿԵՆՏԿՈՄԻ ԱՄՍԱԳԻՐ ՊԻՈՆԵՐՆԵՐԻ ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵՐԻ ՀԱՄԱՐ

Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ՏՐԻԲՈՒՆԱՅԻ ՎՐԱ

Գործ՝ Ա. ԳԵՐԱՍԻՄՈՎԻ

# ԿԱՄՈՆ ՄԱՔՍԱՏԱՆ ՊԵՏ

*Մ. ԿՈՐՅՈՒՆ* | *Նկ. Հ. ՍԱՆԱՍԱՐՅԱՆԻ*

Կամոն (Սիմոն Արշակի Տեր-Պետրոսյանը) Կոմունիստական պարտիայի ականավոր գործիչներից մեկն էր: Ծնվել է 1882 թվականի մայիսի 15-ին Գորի քաղաքում: Պատանեկան տարիներից Կամոն ընդգրկվում է ռևոլյուցիոն ընդհատակյա աշխատանքի մեջ և մինչև կյանքի վերջը անձնվիրաբար ծառայում է ժողովրդի ազատագրության պայքարին: Նրա լեգենդար կյանքը լի է բազմաթիվ սխրագործություններով, որոնք ուսանելի են մեր սերնդի համար:

1947 թվականին գրող Մկրտիչ Կորյունը հրատարակեց իր «Կամո» պատմվածքը... 

1922 թվականի հուլիսի 14-ին Հայաստանից Վրաստան մեկնող գնացքով առավոտյան Թիֆլիս հասան երկու մարդ: Նրանցից մեկը Լոռվա գավառում աշխատող բժիշկ Գերասիմ Մելիք-Գրիգորյանն էր, մյուսը՝ Սովետական Հայաստանի լուսժողկոմ Ասքանազ Մռավյանը: Բժիշկը բարձրահասակ, փոքր ինչ կորացած և արդեն սպիտակած մազերով մարդ էր: Գրեթե իրար միացած խիտ ու թավ հոնքերի տակից նայում էին նրա մեղմ, խորաթափանց և ուշիմ աչքերը: Մռավյանը միջահասակ, նրբակազմ էր, նուրբ դիմագծերով և փոքրիկ պսպղուն ակնոցներով:

Իջնելով վագոնից, նրանք քայլեցին դեպի մաքսատուն:

— Շատ չի՞ արդյոք,— հարցրեց բժիշկը, նայելով իր ժամացույցին:

— Թեև շուտ է, բայց և այնպես, գնանք, հենց իր առանձնասենյակում էլ կսպասենք իրեն,— ասաց Մռավյանը:

Մտնելով մաքսատան բակը, բժիշկն ասաց պահակին.

— Կամոյի մոտ ենք եկել:

— Համեցե՛ք, համեցե՛ք,— լսվեց վերին հարկի մի բաց լուսամուտից: Բժիշկն ու Մռավյանը վերև նայեցին: Կամոն մինչև գոտին կախված լուսամուտից, ուրախ ծիծաղելով կանչում էր նրանց:

— Այդ ո՞ր քամին բերեց ձեզ մեր կողմերը, համեցեք վերև:

Կամոյի առանձնասենյակը բավականին մեծ էր ու լուսավոր: Գրասեղանի վերևում կախված էր Լենինի մեծադիր նկարը:

— Եկել եմ Մյասնիկյանի մոտ՝ Թիֆլիս տեղափոխվելու հարցով,— ասաց բժիշկը:

— Իսկ դո՞ւ, Ասքանազ, ե՞րբ ես եկել Հայաստանից, ի՞նչ կա լուսավորության ֆրոնտում,— դիմեց Կամոն Մռավյանին:

Մռավյանը պատասխանեց, թե ինչ նորություններ կան և ապա ավելացրեց.

— Մի քանի օր է, ինչ Ուզունլարումն էի. մեր սիրելի բժիշկ Գերասիմի մոտ:

— Ի՞նչ գործով էիր Ուզունլար եկել,— հետաքրքրվեց Կամոն:

— Երկու կարևոր հարցով: Ուզունլարում ուսումնական գործի դրվածքը կարգավորելու և ռևոլյուցիոներ Մովսեսի գերեզմանի վրա հուշարձան կանգնեցնելու գործն արագացնելու համար,— եղավ Մռավյանի պատասխանը:

— Ճանապարհից եք եկել, հոգնած կլինեք, եկեք թեյենք, ես ձեզ այսօր ժամացույցով թեյ կհյուրասիրեմ,— ասաց Կամոն և կանչելով քարտուղարուհուն, թեյի պատվեր տվեց:

— Ինչպե՞ս թե ժամացույցով թեյ,— զարմացած հարցրեց Մռավյանը:

— Երբ որ կհյուրասիրեմ, կտեսնեք:

Այդ պահին հնչեց հեռախոսի զանգը: Կամոն վերցրեց լսափողը.

— Այո, հենց այժմ եկեք, խուրջիններով շաքարն ու մաքսանենգին էլ ձեզ հետ վերցրեք, այո, ուղիղ ինձ մոտ...

— Իմ ավագ հրահանգիչներից մեկն էր,— հեռախոսը կախելուց հետո շարունակեց Կամոն: Իմ ցուցումով նա ձերբակալել է մի տարօրինակ մաքսանենգի, որի մոտ գտնված շաքարով պետք է ձեզ թեյ հյուրասիրեմ:

— Բայց չէ՞ որ դու մեզ խոստացար ժամացույցով թեյ հյուրասիրել և ոչ թե շաքարով,— կատակեց բժիշկը:

— Պեպոյի լավ բարեկամներից մեկը՝ Գիքոն ասում է. «Աստուծ ո՞ր մարդուն ստեղծիլ է, համբերանքն էլ հիդն է ստեղծիլ»։ Համբերեցեք և ամեն ինչ կտեսնեք,— նույնպես կատակով պատասխանեց Կամոն։

— Դե, դու պատմիր տեսնենք ի՞նչ ես անում,— դիմեց բժիշկը Կամոյին։

— Էլ մի՛ հարցնի։ Ես հիմա պաշտոնավոր մարդ եմ դարձել,— ծիծաղեց Կամոն։

— Իսկ ինչպե՞ս ես վարում պաշտոնդ,— հետաքրքրվեց Մռավյանը։

— Թե ինչպես եմ վարում պաշտոնս, մանրամասն կպատմեմ թեյելուց հետո. այժմ անցնենք թեյին։



— Այդ ո՞ր քամին բերեց ձեզ...

Ներս մտան քարտուղարուհին և ավագ հրահանգիչը մի գյուղացու հետ, որի ուսին շաքարով լի խուրջին կար։

— Թեյ մատուցեք,— դիմեց Կամոն քարտուղարուհուն։

Քարտուղարուհին գնաց պատվերը կատարելու։

— Շաքարը թողեք, իսկ դրան տարեք,— դիմեց Կամոն ավագ հրահանգչին։ Հրահանգիչը գյուղացու ուսից վար բերեց խուրջինը և գյուղացու հետ դուրս գնաց։ Քարտուղարուհին երեք բաժակ թեյ բերեց և հեռացավ։

Կամոն փակեց դուռը և թեյով լի բաժակների մեջ մի-մի կտոր շաքար գցեց, հետո բաժակները ծածկեց սփռոցով ու շարունակեցին զրույցը։

Քիչ հետո Կամոն վերցրեց սփռոցը և ով հրաշք, բաժակների մեջ շաքարի փոխարեն գտնվում էին թեև մեկական ոսկե ժամացույցներ։ Բժիշկն ու Մռավյանը տարակուսած նայեցին միմյանց։

— Ի՞նչ է նշանակում այս,— հարցրեց բժիշկը։

— Այս նշանակում է՝ մաքսանենգը, որին բռնել ենք գյուղացու հագուստով, սահմանից գաղտնի անց է կացրել ժամացույցներ՝ տեղավորելով շաքարի կտորների մեջ,— պատասխանեց Կամոն, մոտեցավ շաքարով լի խուրջինին ու կոտրեց մի քանի կտոր։ Նրանց միջից ևս դուրս եկան ոսկե ժամացույցներ։ Այս միջոցին առանձնասենյակի դուռը բախեցին։ Կամոն բաց արեց դուռը։ Ներս մտան մաքսատան պետի տեղակալը մի պարսիկ առևտրականի և թարգմանիչի հետ։ Պարսիկ առևտրականը ձեռքերը կրծքին ծալած, խոնարհ բարև տվեց Կամոյին և նրա ընկերներին։ Նրանք ընդունեցին բարևը։ Պետի օգնականը կասկածով նայեց Կամոյի ընկերներին, որոնք անծանոթ էին իրեն։ Կամոն կռահեց նրա կասկածոտ հայացքի իմաստը և դիմեց բժշկին ու Մռավյանին.

— Ծանոթացեք, իմ տեղակալն է։

Նրանք ծանոթացան։

— Կարո՞ղ եմ զեկուցել,— հարցրեց տեղակալը։

— Ազատ կերպով։

— Մանրամասն ստուգեցինք. Տաճկաստանից Բաթում մեկնող այս առևտրականի իրերը։

— Եվ ի՞նչ։

— Նրա մոտ կասկածելի ոչինչ չհայտնաբերվեց։

Կամոն ուշադրությամբ զննեց պարսիկ առևտրականին ու ասաց.

— Հարցրեք, թե որտե՞ղ է ձեռքի ճամպրուկը։

— Թողել է ձեր քարտուղարուհու մոտ։

— Ինչո՞ւ ներս չի բերել։

— Չի ցանկացել իր կեղտոտ արկղով փաշայի (Կամոյի) առանձնասենյակը կեղտոտել,— պատասխանեց թարգմանիչը։

Կամոն զանգը տվեց։ Ներս մտավ քարտուղարուհին։

— Իսկույն բերեք ճամպրուկը։

Քարտուղարուհին կատարեց նրա պատվերը։

— Հազար անգամ ստուգել ենք,— կարծես արդարանալու համար ասաց տեղակալը։

— Չէր խանգարի հազար ու մեկերորդ անգամ էլ ստուգել,— ասաց Կամոն ու ցույց տալով, թե ճամպրուկն է զննում, աչքի պոչով սկսեց հետևել պարսիկ առևտրականին։

Առևտրականը խաղում էր իր համրիչի հատիկների հետ։

— Տեսեք, թե արտաքուստ որքան անտարբեր է դեպի ճամպրուկը, սակայն սիրտը թպրտում է վանդակն ընկած թռչունի պես,— շշուկով ասաց Կամոն իր ընկերներին։

Նրանք ժպտացին և սկսեցին զննել ճամպրուկը, որը կոպիտ ու անտաշ տախտակներից էր պատրաստված, մեջը՝ սրբիչ ու ձեռքի օճառ։ Զննողներից և ոչ մեկը կասկածելի ոչինչ չգտավ ճամպրուկի մեջ։ Առևտրականը շարունակում էր քաշել իր համրիչի հատիկները և զուսպ հետևել սենյակում կատարվողանց ու դարձին։ Երբ ընկերները ճամպրուկում ոչինչ գտնել չկարողացան, Կամոն մոտեցավ պարսիկ առևտրականին ու նրա ձեռքից վերցրեց համրիչը։ Բոլորը սպասողական դրությամբ հետևում էին Կամոյին, իսկ



— Ապա մի լավ զննեցեք ճամպրուկը:

նա հանգիստ կանգնել էր առևտրականի կողքին, քաշում էր համրիչի հատիկները ու կարգադրում.

— Ապա մի լավ զննեցեք ճամպրուկը։ Նորից են զննում։

— Ոչինչ չկա,— փոքր ինչ սրտնեղած ասում է տեղակալը։

— Իսկ այն ի՞նչ է,— ասում է Կամոն, ցույց տալով ճամպրուկի կողերից մեկին փակցված երկարավուն տախտակի կտորը։

Պարսիկ առևտրականը անհանգստության նշաններ արեց և փորձեց բարձրանալ, բայց Կամոյի ուժեղ ձեռքը նրան մեխեց իր տեղում։

Կամոն ինքը պոկեց տախտակը։ Տախտակի ներսի կողմից ակոսաձև փոսիկի մեջ քորոցներով ամրացված էին մի քանի շարք տաճկական ոսկիներ...

— Վայ հալամ... (վայ ինձ),— բացականչեց պարսիկն ու գլուխը ափերի մեջ առած, ծունկի եկավ Կամոյի առաջ։

— Ոսկին ու ճամպրուկը թող մնան, իսկ դրան տարեք,— դիմեց Կամոն իր տեղակալին և առևտրականին վերադարձրեց համրիչը։

Տեղակալն ու թարգմանիչը տարան պարսիկին։ Բժիշկն ու Մռավյանը հիացած էին Կամոյի հնարամտությամբ։

— Իսկ այժմ, ժամացույցով թեյից հետո, անցնենք իսկական թեյին,— ասաց Կամոն և ընկերների հետ դուրս եկավ առանձնասենյակից։

— Ես շուտով կվերադառնամ, —ասաց նա քարտուղարուհուն։— Եթե հարցնեն, զանգ տվեք Մյասնիկյանի մոտ, այնտեղ կլինեմ։

Կայարանին մոտիկ ճաշարաններից մեկում թեյելուց հետո, նրանք գնացին Անդրերկոմ, որտեղ աշխատում էր Մյասնիկյանը։

# ԻՄ ՓԱՄՓՇՏԱԿԱԼԻ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆԸ

Լ. ՀՈՒՐՈՒՆՑ

Նկ. Վ. ԿԱԺՈՅԱՆԻ

Պատից կախված է չորս հաստ փամփուշտանոցներով փամփշտակալը։

Մի դեպք դարձրեց նրան մեր ընտանիքի համար նվիրական հիշատակ։

Ես ձեզ կպատմեմ այդ դեպքը...

Մանկության տարիներին իմ ընկեր Վասակի գլխավորությամբ մենք դաշտ էինք գնում, մտնում էինք դիրքերի մեջ և սկսում էինք «պատերազմ» խաղալ։ Հաճախ այդպիսի խաղերը վատ վերջավորություն էին ունենում, լավագույն դեպքում տուն էինք վերադառնում քիթներս ջարդված կամ թե կապտած, ուռած աչքերով։

Իսկական «պատերազմը» ես տեսա մի քիչ ուշ։

Այդ տեղի ունեցավ հազար իննհարյուր տասնութ թվականին։

Մեր գյուղը հայտնի գյուղ էր։ Բրուտների վարպետության ու շնորհալի արվեստի պատճառով մեր գյուղացիները կավե ամանները փոխարինում էին հարևան Ավթալ գյուղի հացի ու ցորենի հետ։ Ավթալն էլ հայտնի էր իր մարգարիտի նման համեղ, մաքուր լավաշով։

Մեր գյուղը գտնվում է բարձունքի վրա։ Ավթալը մեզանից էլ բարձր է՝ անանցանելի ժայռերի ու ծերպերի գրկում։ Բայց քարաժայռերի և հեղեղատների միջով բարձրանում է մի փոքրիկ արահետ, որը միացնում էր մեր երկու գյուղերը։ Մեր հողերը կպած են իրար. նրանց անջատում է մի աննշան բլրակ, բայց ինչ նշանակություն ունեն բլրակներն ու ժայռերը, երբ մարդիկ այդքան սրտակից ու մտերիմ են։ Ամեն օր մեզ մոտ էին գալիս ավթալցիները, իսկ մեր հայրերն ու պապերն էլ գնում էին նրանց մոտ։ Եվ ինչպես չգնային, չգային, երբ մեծշենցիներն ու ավթալցիներն իրար «քիրվա» էին անվանում, իսկ դա նշանակում է ընտանիքի ամենամոտ ու հավատարիմ մարդը։

Հարևան գյուղերի միջև բարեկամությունն անխախտ էր։

Բայց ահա մի անգամ, մեր գյուղ եկան սև փափախները գլխներին ինչ-որ մարդիկ և ասացին. «Արահետով չգնաք, ոչ մի մարդ Ավթալից ձեզ մոտ չթողնեք»։ Այս սև փափախավոր մարդկանց մեզ մոտ անվանում էին դաշնակներ կամ մաուզերիստներ։

Ինչպես հետո իմացանք՝ այդպիսի սև փափախավոր մարդիկ գնացել էին Ավթալ և հրամայել. «Արահետով չգնաք և ոչ մի մարդ Մեծշենից ձեզ մոտ չթողնեք»։ Այդ մարդկանց ավթալցիներն անվանում էին մուսավաթականներ, իսկ ավելի պարզ՝ ղոչիներ։

Այդ ժամանակ էր, որ մեր տանը հրացան հայտնվեց, և նույն օրն անհետացավ մեր կովը։ Պապս կովը փոխել էր հինգկրականի հրացանի հետ։ Նա, իհարկե, կովը ոչնչի հետ չէր փոխի, եթե չլինեին դաշնակները։ Կովերի փոխարեն ճիշտ այդպիսի հրացաններ հայտնվեցին նաև մյուս տներում։ Զենքերը վաճառում էր հարուստ Վարդազարը։ Այդ օրերին նա ավելի հարստացավ։ Բոլորն էլ գիտեին, որ նրան զենք ու զինամթերքով սպասարկում են դաշնակները, որպես իրենց հավատարիմ մարդու։

Ասում էին, թե պատերազմն այդպես է սկսվում։

Մենք՝ երեխաներս պատերազմ էինք անվանում այն հարձակումները, որոնք վերջին ժամանակները տեղի էին ունենում մերթ այստեղ, մերթ այնտեղ։ Առավոտյան արթնանում էս քնից և լսում ես այս ինչ ադրբեջանական գյուղի վրա են հարձակվել մաուզերիստները, այրել են գյուղը, նախիրը տարել, իսկ այն ինչ հայկական գյուղը կողոպտել են ղոչիները։

«Պատերազմը» սկսելուց մի քանի օր առաջ մեր տուն եկավ քիրվա Նովրուզը։ Նա իմ հոր նման չքավոր գյուղացի էր, պապիս հին բարեկամը։

— Սալա՜մ,— ասաց նա ու սկսեց բացել խուրջինը։

Պապս մոտեցավ բռնեց նրա թևից ու



Նրանք երկար ժամանակ խոսում էին...

*շտապով ներս տարավ։ Նա ամուր փակեց դուռը և սողնակը գցեց։ Հետո նրանք երկար ժամանակ խոսում էին ադրբեջաներեն։ Հայրս հաճախ դուրս էր գալիս և ուշադրությամբ զննում տան շրջակայքը, ականջ դնում, հո մարդ չկա՞ մոտերքում։*

*— Եթե սրան տեսնեն մեր տանը, մեզ համար էլ, սրա համար էլ վատ կլինի,— ասաց տատս։— Շո՛ւտ արեք, ճամփա դրեք թող գնա։*

*Երեկո էր խավար ու անաստղ երեկո։ Երբ բոլորովին մթնեց, ու գյուղում լռեցին ձայները, պապս ձեռքը դրեց Նովրուզի ուսին ու ասաց.*

*— Գնանք։*

*Նրանք հազիվ էին հեռացել տնից, որ մեր դուռը ծեծեցին։*

*— Բացե՛ք, շուտ արեք։*

*Տատս բացեց դուռը։ Խրճիթ մտավ մաուզերը կողքին կախած մեկը, զինված մարդկանց ուղեկցությամբ։ Նրանց հետ էր նաև Վարդազարը։*

*— Մեզ քաջ հայտնի է,— սկսեց խոսել մաուզերիստը,— որ այստեղ ադրբեջանցի կա։*

*Հայրս զարմացավ։*

*— Մենք ամեն ինչ գիտենք,— ասաց անծանոթ մարդը և ոլորեց դեղնած բեղերի ծայրը։*

*Նրա հրամանով զինվորները խուզարկեցին բակը, հարդանոցը, փարախը, գոմը, հավանոցը։ Տունը տակնուվրա արեցին և ոչ ոքի չգտան։*

*— Որտե՞ղ է ծերուկը,— հարցրեց դեղին բեղավորը։*

*Հայրս լուռ էր, չէր պատասխանում։*

*Այդ պահին դրսում ձայներ լսվեցին։ Մեկը հարցնում էր.*

*— Խմբապետն այստե՞ղ է։*

*Զայները մոտեցան։ Մեկ էլ ներս հրեցին ձեռքերը կապած պապիս։ Նա գունատ էր և հազիվ էր կանգնում ոտքերի վրա։ Արյունը կապարի նման սառել էր ու կախվել էր նրա մորուքից։*

*— Ձորում բռնեցինք,— զեկուցեց զինվորը,— երկու հոգի էին, մեկը փախավ։*

*Սպան ծանր ապտակ իջեցրեց հորս երեսին։ Վրա հասավ զինավաճառ Վարդազարն ու նույնպես ապտակեց. մոտեցան էլի երկուսը և սկսեցին ծեծել հորս։*

*Ամբողջ գիշեր հայրս տնքում էր, իսկ պապս զառանցանքի մեջ գալարվում էր անկողնում ու կրկնում միշտ նույն բառերը.*

*— Փախիր, փախի՛ր...*

*Առավոտյան Ոսկանի հայրը այցելեց պապիս և երբ դուրս էր գալիս, տատիս ականջին շշնջաց.*

*— Վաղը երեխային փողոց չթողնես, հարձակում կլինի։*

*Ես լսեցի և անմիջապես հայտնեցի ընկերներիս։*

*Լուսաբացին մենք գաղտնի դուրս եկանք գյուղից։ Ձորից բարձրանում էին ինչ-որ զինված մարդիկ։ Նրանք գաղտագողի մագլցում էին դեպի վեր։ Մեր կողքից անցավ զինված մի ջոկատ։*

*Քիչ հետո կրակոցներ լսվեցին, որոնք արձագանքեցին հեռու լեռներում։*

*Որպեսզի լավ տեսնեինք «պատերազմը», մենք բարձրացանք ձորակի եզրին կանգնած ընկուզի ծառը։*

*«Պատերազմի դաշտը» այնքան լավ էր*

երևում, կարծես բոնևրիս մեջ լինեի։ Պարզ երևում էին խրամատներն ու կրակոցներից առաջացած ծխի քուլաները։

Կրակոցները քանի գնում շատանում էին, բայց հանկարծ մի քանի սև սավերներ անցան մեր մոտից։ Երբ նրանք անցան խրամատների գիծը, տղաներից մեկն ասաց.

— Ինչքա՞ն դատարկ փամփուշտներ կլինեն այնտեղ։

— Փամփուշտները մերն են,— հեղինակավոր տոնով ասաց Վասակը։

Մեզ ոչ ոք չնկատեց։ Թփերի ու քարերի միջով սողալով, մենք հասանք խրամատները և իջանք նրանց նեղ ու խոնավ անցուղիները։ Իսկապես խրամատներում դատարկ փամփուշտները շատ էին։ Մենք լցրինք գրպաններս ու ծոցներս։ Փամփուշտները դեռ տաք էին։ Մոռանալով ամեն տեսակի զգուշություն, մենք նույնիսկ դուրս եկանք խրամատից և ուղևորվեցինք դեպի բաց դաշտը։

Գնդակները սուլում էին չորս կողմից, բայց մենք հավաքում էինք դատարկ փամփուշտները։

Հանկարծ խիտ խոտի մեջ մենք տեսանք քիրվա Նովրուզին։ Նա ընկած էր մեջքի վրա, աչքերը բաց էին, իսկ քոնքի վրա բացված էր մի ահագին վերք։ Քիրվա Նովրուզը սպանված էր։ Սարսափը վայրկենապես պատեց ինձ, և ես տեղումս քարացա։ Ինչ-որ մոտիկ մի տեղից մեզ փափախներով նշան էին անում, գոռում էին, բայց ես ոչինչ չէի տեսնում, ոչինչ չէի լսում։ Ես չէի կարողանում դեմքս շուռ տալ քիրվա Նովրուզի բաց աչքերից։ Այդ աչքերից ես հասկացա, թե ինչ է իսկական պատերազմը։

Մի օրից հետո ամեն ինչ վերջացավ։

Դեղնած բեղավոր սպան անհետացավ։ Սպանվածներին հողին հանձնեցին։ Հաջող առևտուրից հետո զինավաճառ Վարդազարը գյուղի կենտրոնում երկու հարկանի քարե տուն շինեց՝ թիթեղածածկ կտուրով։ Նա գոհ էր «պատերազմից»։

Մյուս օրը պապս մեկնեց Ավթալ գյուղը՝ քիրվա Նովրուզի թաղմանը մասնակցելու։

Նա վերադարձավ Ավթալից մթագնած դեմքով։ Մեր խրճիթը լիքն էր մարդկանցով։ Պապս ներս մտավ, բացեց խուրջինը և հանեց մի հնամաշ փամփշտակալ։ Թռչունների բների նման շարե հաստ փամփշտանոցների մեջ փայլում էին փամփուշտների պղնձե գլխիկները։ Պապս մեկը մյուսի հետևից դուրս քաշեց բներից փամփուշտները և ցույց տվեց ներկա եղողներին։ Դրանք արտասովոր փամփուշտներ էին, գնդակների փոխարեն, նրանց վրա ինչ-որ շորի լաթեր էին հագցված։

— Սա քիրվա Նովրուզի փամփշտակալն է,— ասաց պապս,— նա կրակել է կեղծ փամփուշտներից, որոնց վրա գնդակներ չեն եղել։

...Պատից կախված է Նովրուզի փամփշտակալը, հին, գործածության համար անպետք, կախված է նա որպես նվիրական հիշատակ։



Պահպանիր այն, որդիս...

Պահպանիր այն, որդիս, և հիշիր, թե ինչպիսի կրակի մեջ է փորձարկվել մեր բարեկամությունը։

## ՍՈՎԵՏԱԿԱՆ ԵՐԿՐԻ ՍԻՐՏԸ

*ԻՈՀԱՆՆԵՍ ԲԵԽԵՐ*

(Գերմանիա)

Ո՛վ մեզ ազատեց ծանր օրերին,
Ո՛վ փրկեց ռազմի արհավիրքներից.
Այդ սովետական զինվորներն էին,
Հերոսներն էին խնդության երկրի:
Շնորհակալություն, եղբայր զինվորներ,
Սովետական մեծ երկրի հերոսներ:

Քանդելով պատերն անբիվ բանտերի,
Ո՛վ մեզ պարգևեց բերկրանքը գարնան.
Սովետական հող, քո զավակների
Սուրբ արյանն ենք մենք հավետ պարտական:
Մենք հիշելու ենք միշտ և դարեդար
Քո զավակների արյունը արդար:

Այգիներով է զուգվել հողը մեր,
Մեր դեմ լուսավոր հեռուն է փռվել.
Միշտ սովետական երկրի սիրտը մեծ
Ամենքի բախտի համար է վառվել:
Բաբախել է միշտ այդ սիրտը անմար
Եվ գերմանացու խնդության համար:

Հզորանում ենք մենք տարեց-տարի,
Կյանքի է փոխվում ամեն երազանք.
Գարուն պարգևեց ժողովուրդներին,
Սովետական հող, արյունը քո թանկ:
Սովետական հող, արյունը քո թանկ
Ողջ աշխարհին է բերել խաղաղ կյանք:

## ԱՌԱՆՑ ԿՈՄՈՒՆԻՍՏՆԵՐԻ ՉԿԱ ՉԻՆԱՍՏԱՆ

*ՎԱՆ ՍՅՈՒԽ-ՔՈ*

(Չինաստան)

Կոմունիստներն են մեր առաջ բացել
Ուղին հաղթության,
Եվ հիմա առանց կոմունիստների
Չկա Չինաստան:
Կոմունիստն անհուն սիրով է սիրում
Իր ժողովրդին,
Առանց երկյուղի, առանց վարանման
Նետվում է մարտի:
Մեզ կյանք պարգևեց կոմունիստների
Կամքը անսասան,
Կոմունիստների ճամփան է ուղիղ
Սուր նետի նման:
Ժողովրդին է կոմունիստը միշտ
Սիրով ծառայում,
Իսկ պայքարի մեջ թշնամիներին
Նա չի խնայում:
Կոմունիստներն են մեր առաջ բացել
Ուղին հաղթության,
Եվ հիմա առանց կոմունիստների
Չկա Չինաստան:

## ԽԱՂԱՂՈՒԹՅՈՒՆ

*ՊԵՏԵՐ ԿՈՒՑԿԱ*

(Հունգարիա)

— Սրանք ժայռեր են, տես, բալիկ,
Սա մոզես է, սա՝ թռչուն...
Գետն է ծփում ալիք-ալիք,
Նավերն առաջ են թռչում,
Գործարանն էլ նոր, գեղեցիկ
Ծովում ծխում է, փնչում:
Սա՝ արևմուտք, սա՝ արևելք,
Սա հայրենիքն է մեր նոր,
Լեռներից դեն, Դանուբից դեն
Մեր բնտանիքն է հզոր:
Հարազատ է ամեն ինչ քեզ,
Ամեն ինչ քոնն է, բալիկ.
Խաղաղությունն եմ ես այսպես
Իմ դստրիկին ցույց տալիս:
— Խաղաղությունն իմն է այսօր,
Մայրիկինն է, քոնն է նա:
Նայիր մարդուն աշխատավոր.
Անդուլ գործում է հիմա,
Հերոսաբար է աշխատում,
Որ մեր երկրում հայրենի
Կյանքը հավետ լինի խնդուն,
Հացը առատ միշտ լինի:

*Թարգմ. Պ. ՄԻՔԱՅԵԼՅԱՆ*

# ԱՔԱՂԱՂԻ ԿԱՏԱՐ

Շ. ԹԱԹԻԿՅԱՆ

Նկ. Ա. ԶԱՔԱՐՅԱՆԻ

— Ես պատանի բնասերների խմբակի անդամ չե՛մ ուզում լինել,— ասաց Վարդգեսը:

Վարդանը զարմանքից բերանը բաց արեց.

— Ինչո՞ւ:

— Չե՛մ ուզում էլի, ես ֆուտբոլի թիմի անդամ եմ: Ծառ ու ծաղիկ թող աղջիկները աճեցնեն, դասարանում քի՞չ աղջիկ կա:

— Իսկ ինչո՞ւ աղջիկները:

— Բա ի՞նչ տղայի գործ է ծաղիկներով զբաղվելը:

Այդ օրը Վարդանն ընկերոջ մոտից տուն գնաց վատ տրամադրությամբ: Նրա համար աշխարհում ամենասիրած գործը բույսեր, կենդանիներ խնամելն էր:

— Որտեղից էլ հնարեց, թե դա աղջկա գործ է, հո ձեռագործ չէ,— ինքն իրեն մտածում էր Վարդանը:

⁂

Զարմանալի տղա է Վարդգեսը: Նրա համար աշխարհի բոլոր գործերը բաժանվում էին երկու տեսակի. տղաների և աղջիկների: Եվ հիմա «աղջիկների գործերի» մեջ մի նոր բան էլ էր ավելացրել, ինչպես ինքն էր ասում. «ծառ ու ծաղիկ խնամելը»:

Վարդգեսը բնասերների խմբակի անդամներին հանգիստ չէր տալիս: Մեկ էլ տեսար որևէ մեկին բռնում էր ու դեմքին լուրջ արտահայտություն տալով ասում.

— Սա ծաղիկ է, իսկ սա՝ ծառ...

Վարդգեսի կարծիքով պատահական չէ, որ իրենց դպրոցի ֆիզկուլտուրայի դասատուն տղամարդ է, իսկ բնագիտությանը՝ կին: Նա երազում է դառնալ ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Բարկենի նման. այդպես հաղթանդամ, մկանուտ թևերով, հուժկու կրծքով, ճարպիկ, թեթևաշարժ ու ճկուն: Եթե ընկեր Բարկենը իր ուժեղ մատներով որևէ ծաղկի դիպչի, ապա կասկած չի կարող լինել, որ ծաղիկը տեղն ու տեղը կփշրվի:

Ու Վարդգեսը համառտապես վճռեց.

— Չէ, բույսերով զբաղվելն՝ իմ գործը չէ...

Նա ներողամիտ ժպիտը դեմքին լսում էր Վարդանի պատմածները բնասերների խմբակի պարապմունքների մասին: Վարդանը տախտակից փոքրիկ արկղներ էր պատրաստել, որոնց մեջ ինչ-որ բույսեր էր ցանել ու տնկել, ամբողջ օրը այդ բույսերի շուրջն էր պտտվում, այնպես էր դողում ամեն մի տերևի ու ցողունի վրա, որ Վարդգեսի ծիծաղն էր գալիս:



— Չէ, բույսերով զբաղվելն իմ գործը չէ...

Անցյալ օրն էլ ինչ-որ տեղից բերել էր հաստլիկ տերևներով մի անճոռնի փշոտ բույս, այնպիսի բույս, որ դժվար էր ջոկել նույնիսկ, թե ո՞րն էր տերևը և ո՞րը ցողունը: Նա ասում էր, որ դա կակտուսների ընտանիքի ներկայացուցիչ է: Իսկ երբ բացատրեց, թե կակտուսների ընտանիքի մեջ էին մտնում թզենին, կաուչուկատու ծառը և ուրիշ այլ բույսեր ու ծառեր, Վարդգեսը թերահավատությամբ նայեց ընկերոջը և ասաց.

— Ճիշտ է, այդ բոլորը հետաքրքրական է, բայց անհավատալի է: Այս անճոռնի, դաճաճ բո՞ւյսը պիտի լինի թզենու և թթենու ներկայացուցիչը:

— Սա բոլորովին էլ ոչ անճոռնի է, ոչ էլ տգեղ,— վիրավորվում էր Վարդանը։— Սա շատ հետաքրքիր բույս է։

Թող լինի հետաքրքիր, իսկ Վարդգեսին բոլորովին այլ միտք էր զբաղեցնում։ Այդ օրը նրանք պետք է մրցման դուրս գային 14-րդ դպրոցի ֆուտբոլային թիմի հետ։

— Կգա՞ս, մեր խաղը նայելու,— հարցրեց նա Վարդանին։

— Կգամ, ինչո՞ւ չէ, համաձայնեց Վարդանը, —այդ ե՞րբ է պատահել, որ դուք մրցման գնաք, ու ես քեզ հետ չգամ։

***

Եղանակն ամպոտ էր և տոթ։ Տղաները խաղում էին ծուլորեն, խաղն ընթանում էր անհետաքրքիր։

Վարդանն արդեն զղջում էր, որ զուր ժամանակ էր կորցրել ու եկել։ Այդ խաղի ընթացքում թիմերից ոչ մեկին չհաջողվեց բաց անել հաշիվը։ Խաղը նոր էր ավարտվել, երբ



Տղաները խաղում էին ծուլորեն...

սկսեց բարակ անձրև մաղել։ Տղաները շտապ-շտապ հագնվեցին և դուրս եկան ստադիոնից։ Անձրևն ուժեղացավ, սկսեց ամպրոպը որոտալ։ Կարծես դույլերով էին վերևից ջուր թափում։ Մի քանի րոպեում տղաները բոլորովին թրջվեցին։ Վարար անձրևի տակ նրանք վազում էին փողոցով և արդեն զղջացել էին, որ դուրս են եկել ստադիոնից, երբ տղաներից մեկը ձայն տվեց.



— Եկեք մտնենք ընկեր Բաբկենենց տունը։ Այ, այս դարբասն է։

Էլ վարանելու ժամանակ չկար։ Տղաները խուժեցին դարբասից ներս, բայց ամաչելով, խմբվեցին պարսպի պատի տակ։

Պատը նրանց որոշ չափով պահպանում էր անձրևի շեղ կաթիլներից։

— Հենց այստեղ էլ սպասենք,— առաջարկեց Հայկը,— թե չէ անհարմար բան է, թաց ոտքերով, այսպես մեծ խմբով ընկեր Բաբկենենց տուն մտնենք։

Բայց նրանց խոսակցության և ծիծաղի ձայները հավանորեն հասնում էին մինչև տան ներսը, որովհետև շուտով պատշգամբի վրայի դուռը բացվեց, և երևաց Բաբկենը։

— Այս ի՞նչ բան է, ինչո՞ւ եք պատի տակ կուչ եկել։ Ներս եկեք, տղաներ։

Մի փոքր շեմ ու շեմից հետո խումբը բարձրացավ պատշգամբ։

— Ներս եկեք, տաքացեք, թրջվել եք,— հրավիրեց ընկեր Բաբկենը։

Տղաները մեկը մյուսի թիկունքի հետևը պահվելով մտան սենյակ։

— Տեսա՞ք, ինչ վարար անձրև եղավ,— ասաց Բաբկենը,— իսկ ես ուզում էի այսօր խնձորենու վրա մի պատվաստ կատարել։

Վարդգեսը զարմացած նայեց ֆիզկուլտուրայի դասատուին։

— Դո՞ւք պետք է պատվաստ կատարեիք,— զարմացած հարցրեց նա։

— Այո, ես, ի՞նչ կա այստեղ զարմանալու։

— Վարդգեսը կարծում է, թե ծառ ու ծաղկով միայն աղջիկները պետք է զբաղվեն,— մեջ մտավ Վարդանը։

— Աղջիկնե՞րը, իսկ մի՞թե ես աղջիկ եմ,— հարցրեց Բաբկենը։— Մեր բակում և բնակարանում եղած բոլոր բույսերը, ծաղիկներն ու ծառերը ես եմ աճեցրել ու խնամել, դուրս եկեք պատշգամբ և տեսեք։

Տղաները դուրս եկան պատշգամբ։

— Անձրևն արդեն դադարել է,— ուրախացան տղաները։

— Այո, իհարկե, վարար անձրևը շատ երկար չի տևում,— ասաց Բաբկենը։

Տղաները, որ խուճապով ներս խուժելիս կարգին չէին դիտել բակը, այժմ լավ ուշադրություն դարձրին։ Տան առջևի փոքրիկ հողամասն այնքան էր մշակված և այնքան փարթամ ու շքեղ տեսք ուներ, որ կարծես մի լավ բուսաբանի փորձադաշտ լիներ։

Կանոնավոր շարված էին պտուղներով ծանրաբեռ փշատենիները, դեղձենիները, խնձորենիներն ու այլ ծառեր։ Ծառերի միջև ընկած տարածություններում փոքրիկ մարգերի մեջ կանաչին էին տալիս բանջարեղենները, իսկ դրան առջև ընկած մասում ծաղիկներն էին։ Էլ ինչ գույնի ու ձևի ծաղիկ ասես չկար այնտեղ։ Սպիտակ, կարմիր ու դեղին գեորգինաներ, կապույտ ու թավշակարմիր մեխակներ, բաղեղավոր աբելիլաներ, վառ դեղին նարգիզներ։ Իսկ օդում մի այնպիսի բուրմունք էր տարածված, որ մարդ պարզապես հագենալ չէր կարողանում։

— Ի՜նչ գեղեցիկ է, ի՜նչ լավ է,— հանկարծ բացագանչեց Վարդգեսը։

Այդ ժամանակ Վարդանն ասաց.

— Նայի՛ր, Վարդգե՛ս, սա ծառ է, իսկ սա՝ ծաղիկ...— բոլորը ծիծաղեցին, իսկ Վարդգեսը կարմրեց, և այն էլ ինչպես կարմրեց, ճիշտ այն ծաղիկների նման, որոնց անունը նա չգիտեր և որոնց նայում էր նա հիացմունքով։ Այդ վառ կարմիր ծաղիկները, որոնք հովհարաձև էին, ձեռքի ափի մեծություն ունեին։

— Ես ուզում եմ փորձել մեր կլիմայական պայմաններում թզենի աճեցնելը, —ասաց Բաբկենը։

— Թզենին պատկանում է կակտուսների ընտանիքին,— մեջ ընկավ Վարդանը։

— Ճիշտ է,— համաձայնեց ֆիզկուլտուրայի դասատուն,— ես էլ մտածում եմ, թե քանի որ այդ ընտանիքին պատկանող բույ-



... Տեսնում ես ինչ գեղեցիկ են։

սերի մեծ մասը հարմարվում է մեր կլիմային, ապա ինչո՞ւ պիտի թզենին չհարմարվի։

Վարդգեսը, վերջապես, չհամբերելով հարցրեց.

— Իսկ ինչպե՞ս է այս ծաղիկների անունը։

— Այս ծաղիկների՞նը, Աքաղաղի կատար,— պատասխանեց դասատուն,— տեսնո՞ւմ ես ինչ գեղեցիկ են։ Իսկ դու ասում ես, թե ծաղիկ խնամելը աղջկա գործ է։

Վարդգեսը նորից կարմրեց։

Իսկ քիչ հետո, երբ պատրաստվում էին դուրս գալ, նա հանկարծ ասաց.

— Այս աքաղաղի կատարի սերմերից մի քանի հատ չե՞ք տա...

— Ինչո՞ւ չէ, սիրով,— պատասխանեց Բաբկենը։

Տուն գնալիս Վարդգեսը ճանապարհին մտածում էր, թե երբ վաղը խնդրի, որ իրեն էլ գրեն պատանի բնասերների խմբակի անդամ, իր վրա չե՞ն ծիծաղի դասընկերները։

# ՀՈՎԱԶԱՁՈՐԻ ԳԵՐԻՆԵՐԸ

Վ. ԱՆԱՆՅԱՆ

Նկ. Վ. ԹԻՎԱՆՅԱՆԻ

Այգեձոր գյուղի մի խումբ դպրոցականներ ֆերմայից վերադառնալիս անցնում էին Հովազաձորի մոտով: Դպրոցի բնասերներից Աշոտը՝ ցնորամիտ մի պատանի, ընկերներին համոզում է գնալ Հովազաձոր՝ քարայծեր տեսնելու: Ժայռի ճակատով ձգվող նեղ արահետով խումբը մտնում է ձորը և մնում այնտեղ փակված. անակնկալ վրա հասած ձյան փոթորիկը փակում է ձորի միակ ելքը՝ նեղ շավիղը: Անփորձ դպրոցականները, ֆերմայի հովիվ Ավդալի որդի Հասոյի հետ միասին մերկ ձեռքերով, մնում են դաժան բնության դեմ հանդիման: Որս անելու անհաջող փորձեր են կատարում, հատապտուղներ են հավաքում, արմտիք են հանում ձյան տակից և հյուծված ու թուլացած շարունակում են բացել փակված արահետը, որը նրանց պետք է դուրս հաներ լույս աշխարհ:

Խումբը համառ կռվի մեջ է բնության դաժան տարերքի դեմ:

Կոլեկտիվից դուրս ամենաուժեղ մարդն անգամ անզոր է, իսկ կոլեկտիվի մեջ՝ հզոր,— այս է Վ. Անանյանի «Հովազաձորի գերիները» վիպակի իմաստը:

Տպագրում ենք մի հատված այդ վիպակից:

*Գործը շատ դանդաղ էր առաջ գնում, բայց երբ կերան ընկերների բերած մասուրը և մի փոքր էլ հանգստացան, նոր ուժեր զգացին իրենց մեջ, և դա ոչ այնքան սնունդից, որքան այն հույսից, որ զորեղանում էր նրանց մեջ՝ մաքրված կածանը երկարելու հետ միասին:*

*Փոխեփոխ նրանք աշխատեցին մինչև կեսօր և հաշվեցին տեսան, որ մաքրել են փակված շավիղի մոտ մի քառորդ մասը: Գործն այդպես ընթանալու դեպքում կարելի էր վեց-յոթ օրում բոլորովին մաքրել կածանը և մնաս բարով ասել Հովազաձորին:*



— Վա՜յ, էս ինչ սոսկալի բան եղավ:

*Մի բան վատ էր, որ Սարգիսը նորից գլուխ էր պահում: Նա գերադասում էր նորից քարշ գալ խմբի պոչից:*

*Պոչում ոչ միայն գործ չկար, այլև ապահով էր. նրա ոտքի տակ շարունակ մաքրված-բացված շավիղ էր: Վտանգն առջևում էր, ուր նեղլիկ կածանի վրա թին խրում էին ձյան կույտերի մեջ և ուժ տալիս մեջքին ու ծնկներին: Մեկ էլ տեսար հավասարակշռությունդ կորցրիր և գլորվեցիր անդունդը: «Չէ, Նազարը կռիվ գնացողը չի... Ինչ գործ ունես...»:*

*Բայց ինչպես որ պատերազմի դաշտում թշնամու գնդակը հաճախ իր գլուխը խրամատներում թաքցնող վախկոտին է գտնում, այնպես էլ Սարգիսը, որ բոլորից շատ էր հոգ տանում իր կյանքի համար, հանդիպեց այն ձախորդությանը, որից շատ է զգուշանում. նրա ոտքը սայթաքեց, հավասարակշռությունը կորցրեց և գլորվեց անդունդը... Ներքևից թմփոց լսվեց, ժայռին զարնվող քարի չրխկոց և ամեն ինչ լռեց:*

*Շուշիկը ճչաց և նստեց տեղում, իսկ Բույնախը սկսեց տագնապահար հաչել:*

*— Վա՜յ, էս ինչ սոսկալի բան եղավ,— ծնկները դողդողալով ասում էր Գագիկը: Նա բռնեց շավիղի պռնկից ցած նայող Աշոտին:*

*— Ետ կանգնիր, հիմա դու էլ կգլորվես:*

Աշոտը մռայլ ու կենտրոնացած ցած նայեց. դեպի անդունդն ուղղահայաց իջնող ժայռի լանջը չէր երևում, միայն նրա քիվերից մեկին, ժայռի նեղ գոգի վրա, կանաչին էր տալիս մի փոքրիկ եղևնի:

— Սարգի՜ս,— ցած կռանալով կանչեց Աշոտը:

Ահավոր լռություն էր տիրում, միայն երբեմն լսվում էր Շուշիկի թույլ հեծկլտոցը:

Գնաց, ժայռերի տակ փշրվեց իրենց ընկերը, իր թերություններով, եսապաշտ, բայց և այնպես ընկերը: Եվ դա այն ժամանակ, երբ սկսել էր դարձի գալ, երբ առաջին քայլերն էր անում դեպի կոլեկտիվը:

— Մենք դաժան էինք նրա նկատմամբ,— հեծկլտանքից ուսերը ցնցելով գանգատվում էր Շուշիկը, և բոլորն էլ գիտեին, թե ում է ուղղված նախատինքով լի նրա խոսքը: Եվ նա, ում ուղղված էր այդ բողոքը, խղճի խայթ էր զգում: Եթե իմանար, որ այդպիսի դժբախտություն կպատահի, Աշոտը նրան դառը խոսքեր չէր ասի, նույնիսկ հետն աշխատանքի չէր բերի:

— Գնանք ձորի մյուս ափից նայենք, գուցե մի տեղ դեմ առած լինի,— առաջինն ուշքի գալով առաջարկեց Հասոն:

Իր բացած կածանով խումբը ետ գնաց: Իջավ ձորակը, անցավ նրա մյուս ափը:

Պատանիները տագնապով լի հայացքով զննում էին իրենց դիմաց վեր ելնող ժայռի ճակատը, նրա ծերպերը, խոռոչներն ու ճեղքերը: Ավաղ, կենդանության ոչ մի նշույլ չէր երևում:

Քարերից բռնելով նրանք ձորն իջան այն ուղղությամբ, որտեղից գահավիժել էր իրենց ընկերը, բայց ժայռի տակ թափված ձյունից և քարի հատ ու կենտ կտորներից զատ ոչինչ չկար:

— Ժայռի ճակատին է մնացել, իմ կարծիքով եղևնուն է դեմ առել,— գոչեց Աշոտը: Նրա ձայնը հնչում էր հուսատու:— Այստեղից թուփը նրան ծածկում է մեր տեսողությունից, գնանք վերևից նայենք...:

Նրանք վերադարձան իրենց եկած ճանապարհով: Բոլորն էլ լուռ էին, մտախոհ, սրտները լի ահով ու կսկիծով:

Երբ հասան Սարգսի անկման վայրը, Աշոտը շավիղի պռնկին պառկեց, առաջ սողաց և անդունդի վրա կռանալով, ցած նայեց:



— Լաց ու կոծ մի՛ անի...

— Այնտեղ է,— ետ սողալով գոչեց նա,— թփի վերևում շորի փեշը երևաց... Ոտներիցս բռնեցեք, մի քիչ էլ առաջ գնամ...

— Կենդանի՞ է...

— Չի՞ շարժվում...

— Չգիտեմ... Հիմի կպարզեմ... պինդ բռնեցեք ոտներիցս...

Շուշիկը երկյուղով տեսավ, թե ինչպես տղան ոտքերը թողեց արահետում, իսկ ինքը գրեթե ամբողջ մարմնով կախվեց անդունդի վրա:

Նա ձեռքերով ծածկեց աչքերը, և եթե ընկերներին չփոթեցնելու ահը չլիներ, կճչար սարսափից:

— Վեր բարձրացրե՜ք...— լսվեց ներքևից:

Երբ նրանք վեր քաշեցին Աշոտին, տեսան, որ նրա աչքերը լցվել են արյունով և ուռել ու փքվել են ճակատի ու վզի երակները։

— Սարգիսը թաղված է մեր թափած ձյան կույտի մեջ,— ասաց Աշոտը։— Գուցե կենդանի լինի,— Սարգիս, Սարգի՜ս...

Ոչ մի պատասխան։

Նստել էին մեր պատանիները քարերին լուռ ու վշտահար։

Շուշիկը դարձյալ լալիս էր, բայց այս անգամ արդեն ուրախությունից։

— Կենդանի է, չէ՞, Աշոտ,— հարցնում էր նա։

— Կաց, մի տեսնենք ինչ ենք անում,— բարկացավ Աշոտը։

— Մեռա... մեռա... թույլ նվվոցի նման լսվում էր կարծես անտակ հորի միջից։

— Ի՞նչ ենք անելու,— լացակումած հարցրեց Շուշիկը։

— Սվսվալն արգելվում է։ Գագի՛կ, Հասո՛, դուք նորից գնացեք պտուղներ ճարեցեք, իսկ ես ու Շուշիկը գնում ենք կրակ ու վառելիք բերենք։ Դեհ, ռանգներդ բացվե՞ց, ինչ եք ատամներդ ցույց տալիս, մարշ...

Հասոն ու Գագիկը թեթևացած սրտով գնացին դեպի թփուտները. իսկապես, եթե վառելիք, կրակ ու ուտելիք մատակարարեն Սարգսին, հո շաբաթով էլ կարող է ապրել իր այն «բնում», ուր բախտը նետել է նրան։



Խումբը իջավ ձոր։

Կես ժամ անց, երբ նրանք մասուր էին քաղում, Աշոտը ժայռի ճակատից մեկ-մեկ ցած էր նետում վառելափայտերը։

— Ես կմեռնեմ... մամա ջա՜ն...— ներքևից բառաչում էր Սարգիսը։

— Լաց ու կոծ մի՛ անի,— զայրացավ Աշոտը։— Ձայնդ կտրիր, թե չէ, կթողնենք կգնանք, արծիվների բաժին կդառնաս...

Շուշիկը հանդիմանանքով նայեց օղակավարին։

— Ինչ չարն ես, Աշո՛տ...

— Չար չեմ, սիրտ եմ տալիս... տես ինչպես ձայնը կտրե՞ց... Սարգիս, փայտերը ներս տար ու ծածկի տակ կրակ արա։ Ահա կրակը, եկավ...

Այս ասելով նա մի քանի թեժ ածխակտորներ ցած նետեց՝ վառվող ծայրերը դեպի վեր։

— Ածխակտորներն իրար միացրու, փչիր, որ չհանգչեն...

Մի քանի րոպեաչափ լռություն տիրեց։

— Ի՞նչ բանի ես, այ տղա,— հարցրեց Աշոտը։

Որպես պատասխան՝ ներքևից ծխի մի քուլա բարձրացավ։

Խումբը մինչև ուշ գիշեր մնաց արահետում։ Մի փոքր աշխատեցին, բայց ավելի զրուցում էին Սարգսի հետ, սիրտ տալիս, վառելիք և չոր պտուղներ ցած թափում նրա համար։ Թեև գիշերվա սառնամանիքը սեղմում էր, բայց նրանցից ոչ մեկը քարայր վերադառնալու ցանկություն չէր հայտնում։ Բոլորն էլ հոգով իրենց կապված էին զգում այդ քարե արահետին, որի ներքևից ծուխ էր բարձրանում, և կրակի շողքերն ընկել էին ժայռի լանջերին։

— Այ տղա, մի կրակի շուրջը պտըտվի, դուցե շողքդ տեսնենք, լոլոզ բոյիդ կարոտել եմ,— ապրած սարսափից հետո առաջին անգամ կատակեց Գագիկը։

Երևի նրա կատակը տեղ հասավ, որովհետև հաջորդ վայրկյաններին մի վիթխարի ուրվական երևաց Հովազաձորի ճերմակ տափարակին, և հսկայական մի ձեռք մեկնվեց դեպի դիմացի ժայռերը. կարծես Տորք-Անգեղն էր գերանաչափ ձեռքերով ուզում պոկել ժայռերն ու նետել թշնամու վրա։

— Ա՜յ, հիմի որ կարոտս առա... Մեկ-մեկ շողքդ ման ածա, տեսնենք—մխիթարվենք...

Մինչ Գագիկն ուրախությունից այդպես շաղակրատում էր, Աշոտը ցած կռացավ և բարձր ձայնով հարցրեց.

— Սարգի՛ս, գնա՞նք, թե գիշերը մնանք այստեղ...

— Բա ինձ մենա՞կ եք թողնում,— լսվեց ներքևից։

— Չվախենաս, հիմի ոչ մի գազան չի կարող քեզ մոտ գալ. անառիկ բերդի մեջ ես...

— Ի՞նչ ասեմ... դուք գիտեք...

— Մի մեծ փայտով կրակը սրբիր և պառկիր կրակի տաքացրած քարին։ Դու միշտ ներսում եղիր, կրակը՝ դրսում։ Այնպես արա, որ առաջից կրակը պաշտպանի քեզ, հետևից՝ ժայռի պատը։ Հասկացա՞ր։

— Հասկացա... օ՜ֆ, ցավում է...

— Ոչինչ, պի՛նդ կաց։ Դե, բարի գիշեր։

— Բարի գիշեր, Սարգի՛ս ջան,— խավարում լսվեց Շուշիկի բարակ և քնքուշ կանչը։

Ամո՞թ զգաց Սարգիսը, թե ջերմություն, բայց Շուշիկի այդ կարճկից խոսքից հետո այլևս չարտնչաց։

Մթնում խարխափելով, խումբը իջավ ձորը և գնաց պատսպարվելու իր անձավ-օթևանում։

Գիշերը տղաները երբեմն դուրս էին գալիս անձավից, տեսնում էին հրե ցոլքերը ժայռի ճակատին և կարճ եղևնու ստվերը դեպի ձորը երկարած։

— Սարգի՛ս, ո՞նց ես,— ձայն էին տալիս նրանք։

Սրտապնդվում էր պատանին այդ ձայներից և զգում, որ դրանք են իրեն կապում կյանքին։ Չլինեին իր ընկերները թեկուզ մի օր, նա կորած էր անդառնալիորեն..

(Շարունակելի)

ՆՈՐ ԴՊՐՈՑԸ

*Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ*

Ասես թե լույս է թափվում
Այս պատերից սպիտակ,
Կամարներից այս անճուճ
Եվ սյուներից ներդաշնակ։

Կանչում են մեզ դեպի վեր
Աստիճաններր մարմար,
Գեղաքանդակ արձաններ,
Ցայտաղբյուրներր գոհար։

Կանչում է մեզ աննման
Ճանապարհը այդ լույսի,
Ոսկեղուռր մանկության՝
Շենքր մեր նոր դպրոցի։

# ԲԵՐԳԻ ՏՈՆԸ

*Ս. ՍԱՐԳՍՅԱՆ*

Մի խումբ պիոներներ ուշադրությամբ դիտելով շրջապատը՝ առաջանում են կանաչախիտ ծաղկուղիներով դեպի ցուցահանդեսի կոլտնտեսային հրապարակը։ Երբ շրջանցեցին գլխավոր պավիլիոնի հսկայական շենքը, նրանց առաջ բացվեց սոցիալիստական փոքրիկ քաղաքի ամբողջ գեղեցկությունը։ Ծաղիկներով ու այգիներով շրջապատված, եղբայրական 16 ռեսպուբլիկաների, մարզերի և երկրամասերի պավիլիոնները հիշեցնում էին հեքիաթային աշխարհի պալատներին։ Պիոներները հիանում էին հրապարակում գտնըվող «Ժողովուրդների բարեկամություն» և «Քարե ծաղիկ» շատրվաններով, որոնց բյուրեղյա շիթերը խոյանում էին դեպի երկինք։

— Արայի՛կ, այստեղ մոտիկ պետք է լինի հայկական պավիլիոնը, արի գնանք։

Դա բրգաձև սյունազարդ մի շենք էր։ Պավիլիոնի ճակատին հայերեն տառերով գրված էր՝ «Հայկական ՍՍՌ»։ Երեք կամարակապ բրոնզյա դռների մոտ հավաքվել էին մի խումբ ռուս և ուկրաինացի պիոներներ։



— Այս ջուրը և ձկները բերված են Սևանա լճից:

*— Ասացեք, եթե կարելի է,— մոտենալով մեզ դիմեցին նրանք,— ի՞նչ է ձուլված դռների վրա:*

*Արայիկը ուշադրությամբ դիտելով դռները պատասխանեց.*

*— Այս դռների զարդերը հին հայկական մանրանկարչությունից են վերցված:*

*Այս կարճատև խոսակցությունը առիթ եղավ, որպեսզի երկու խմբերն էլ ծանոթանան միմյանց հետ:*

*— Տեսեք, առաստաղը նույնպես զարդարված է մանրանկարներով,— ուշադրությամբ դիտելով ընդհանուր դահլիճի առաստաղը,— ասաց Արայիկը:— Սրանք գյուղատնտեսական այն կուլտուրաներն են, որոնք աճում են Հայաստանում:*

*Պիոներների ուշադրությունը իսկույն գրավեց դիմացի պատի երկայնքով ձգվող «Արարատյան դաշտը» մեծ պաննոն: Որքա՜ն գեղեցիկ են Արարատի ձյունապատ գագաթները: Ահա Արարատյան դաշտավայրն իր մըրգառատ այգիներով: Հարթությունը կտրում, անցնում է խճուղին, որին ուղեկցում են էլեկտրալարերի սյուները: Գյուղերում վառվում են Իլյիչի աչիկները: Բարդիներով շըրջապատված ցանքատարածությունների մոտ գտնվում են խաղողի այգիները: Երկար շարքերով ձգվում են խաղողի վազերը, որոնց վրա վառվում են ոսկեգույն ողկույզները:*

*— Կո՛լյա, ապա տես Հայաստանի մակետ-քարտեզը,— իր ընկերոջ թևը քաշեց մի ռուս պատանին:— Նայի՛ր, ինչքան լեռներ կան, բայց էլեկտրիֆիկացման ցանցը բավականին խիտ է... Ա՛յ, լճակ էլ կա. ինչպե՞ս է կոչվում...*

*— Դա Սևանա լիճն է,— հպարտությամբ պատասխանեց պիոներ Վարշամը:*

*Ճեղքելով դահլիճի կենտրոնում հավաքված խառն բազմությունը, մենք մոտեցանք հիանալի ակվարիումին: Երեք շարք շատրվանները ցայտում էին հենց դահլիճի ներսում: Թափանցիկ կայլակների հետևում, ուր ուրվագծված էր Սևանա լիճը, լողում էին հանրահռչակ «իշխան» ձկները:*

*— Այս ջուրը և ձկները,— բացատրում է Վարշամը,— բերված են Սևանա լճից:*

*Ճաշակով ձևավորված ինը ստենդներում արտացոլված էին Սովետական Հայաստանի նվաճումները: Հայաստանը ցարական դաղութից վեր է ածվել արդյունաբերական մեքենայացված հարուստ կոլտնտեսային մի երկրի, որտեղ զարգանում է շաքարի, կոնսերվի, ծխախոտի, գինու-կոնյակի և այլ տեսակի ապրանքների արդյունաբերությունը:*

*— Սիրելի երեխաներ,— բացատրում է պավիլիոնի գլխավոր մեթոդիստ Ի. Դումանյանը,— Հայաստանի արդյունաբերության ու գյուղատնտեսության համախառն արտադրանքը 1913 թվականի համեմատությամբ 1953 թվականին աճել է 93 անգամ: Այժմ ռեսպուբլիկայի գյուղատնտեսությանը սպասարկում են հազարավոր տրակտորներ, կոմբայններ և այլ մեքենաներ:*

*Դահլիճի ձախ անկյունում, որտեղ տեղավորված է ժողովրդական ստեղծագործության ստենդը, մեր ուշադրությունը գրավեց Մաո Ցզե-դունի դիմանկարը պատկերող գորգը: Դա գործել է վարպետ Թարակյանը:*

*— Արայի՛կ, մանրադիտակ, ապա նայենք ինչ կա այնտեղ,— մոտենալով մանրադիտակներին ասաց Վարշամը և աչքը մոտեցրեց դիտակին: Արվեստի ժողովրդական վար-*

պես Հ. Պողոսյանը բրնձի հատիկի կեսի վրա պատկերել էր Մարքսի, Էնգելսի, Լենինի, Ստալինի դիմանկարները և մակագրել՝ «Մարքսի — Էնգելսի — Լենինի — Ստալինի դրոշով առաջ, դեպի կոմունիզմի հաղթանակը»:

— Ապա կարդացեք ի՞նչ է գրված այստեղ,— դիմեց ուկրաինացի Գլեբը, որ դիտում էր մյուս մանրադիտակով:

Արայիկը մոտեցավ մանրադիտակին. ապակե ոսպնյակի տակից խնձորի կորիզի կեսի վրա ժպտում էր Միչուրինը: Դիմանկարի տակ գրված էին նրա հանրահայտնի խոսքերը. «Մենք չենք կարող բնությունից շնորհներ սպասել. դրանք նրանից վերցնելը մեր խնդիրն է»:

— Այժմ անցնենք մյուս դահլիճները, — լսվում է էքսկուրսավարի ձայնը:

Բուսաբանության դահլիճը, ցույց է տալիս Սովետական Հայաստանի հաջողությունները ցորենի, բամբակի, ծխախոտի, շաքարի ճակնդեղի կուլտուրաների աճեցման ասպարեզում: Այստեղ առանձին ստենդներ պատմում են, թե ինչպիսի աշխատանքով են կոլտնտեսականները հասել նման հաջողությունների:

Անասնաբուծական սրահի զարդը մի մեծ պաննո էր: Լոռվա փարթամ արոտավայրերից վեր բարձրանում են սիզախոտերով ծածկված ենթալպյան լեռները, որոնց գագաթի հավերժական ձյունը ձուլվել է երկնքի հետ:

— Գնանք խաղողագործության դահլիճը,— ասաց էքսկուրսավարը:

Ինչքա՜ն շատ խաղող կար այնտեղ...

— Հին Հայաստանում,— պատմեց էքսկուրսավարը,— խաղողը աճում էր միայն Արարատյան դաշտավայրում, իսկ այժմ խաղող աճեցնում են Կոտայքի, Ազիզբեկովի, Նոյեմբերյանի, Ալավերդու և այլ ենթալեռնային ու լեռնային շրջաններում:

Արաքսի ափին, բարդիներով շրջապատված անծայրածիր այգիներ ունի «Փարիզի Կոմունա» կոլտնտեսությունը: Արդեն երկրորդ անգամն է, որ կոլտնտեսականները մասնակցում են Համամիութենական Գյուղատնտեսական ցուցահանդեսին: Առաջին անգամ 1939—40 թվականներին և այս տարի:

— Կոլտնտեսությունում,— բացատրում է էքսկուրսավարը,— կան Սոցիալիստական Աշխատանքի հինգ Հերոս, 80 կոլտնտեսականներ պարգևատրված են Սովետական Միության շքանշաններով ու մեդալներով: Թադևոսյանի ղեկավարած բրիգադան 12 հեկտար տարածության ամեն մի հեկտարից անցած տարի ստացել է 146 ցենտներ խաղող: Նրանից ետ չեն մնում Ա. Ասլանյանի և Ա. Մուրադյանի բրիգադաները: Նրանք աճեցրել են Ոսկեհատ, Մսխալի, Նազելի, Երևանի, Արարատի, Արևիկ խաղողի տեսակները, Կախեթի, Սապերավի, Մուսկատի հիբրիդները:



Ցուցահանդեսի բեկնածու Ռ. Հակոբյանը Բամբակաշատի կոլտնտեսության դաշտում:

Նրանք գնացին պավիլիոնի այգին: Խաղողի որթերը բարձրացել և կամարել էին այգի տանող ճանապարհը: Նրանց վրա վառվում էին սև ու սպիտակ խաղողի ողկույզները:

Այգին բռնում է 200 քառակուսի մետր տարածություն: Ահա և դեղձի, ծիրանի, բալի, խնձորի, տանձի, սալորի, ձիթենու, թզենու և այլ տեսակի շատ ու շատ ծառեր:

Պիոներները երկար ժամանակ հիանում էին այգու առատությամբ և գեղեցկությամբ:

Էքսկուրսավարը բարի ժպիտը դեմքին ասում էր.

— Մի քանի տարի անընդհատ հայաստանցիները աշխատել են այս այգում: Նրանք աշխատել են, որ ամեն ինչ լինի բնական, ինչպես Հայաստանում:

***

...Երեկոն դանդաղ իջնում է ցուցահանդեսի մարդաշատ ծառուղիների վրա: Հազարավոր լամպեր՝ ողողված շատրվանների բյուրեղյա ցողերի հետ, լուսավորում են պավիլիոնները, հրապարակները, ծառուղիները և պուրակները:

...Սոցիալիստական քաղաքի երեկոն արշալույսն է հաջորդ օրվա, որին սպասում են հազարավոր նոր էքսկուրսանտներ, հյուրեր և դելեգացիաներ...

# ՓՈՔՐԵՐԻ ՀԱՄԱՐ

## ՇԱՏ ԵՆՔ

Վ. ՏԱԼՅԱՆ

— Ինչքա՞ն ես դու:
— Ես, մեկ եմ,
Իսկ դո՞ւ...
— Դե, ես էլ մեկ եմ:
— Իսկ ես ու դո՞ւ...
— Գիտեմ՝ երկու:
— Մեզ միացան
Սոսն ու Կիման:
— Պարզ է էլի,
Չորս ենք հիմա:
— Չորսն էլ որ գա՞ն...
Ասա, դե շուտ:
— Կաց մտածեմ...
Կդառնանք ութ:
— Ասենք Ավիկն էլ մոտ եկավ:
— Այդ... այդ արդեն ինը եղավ:
— Ջարի՞կ, դու էլ որ մեզ հյուր գա՞ս:
— Կդառնանք՝ տաս:
— Ո՜ւ, ինչ շատ ենք
Բոլորս այսպես...
— Բա ի՞նչ գիտես,
Քիչ չկարծես:

## ՀԱՄԵՐԳ

Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ

Մհերն ունի մի դաշնամուր,
Իսկ քույրիկը ձայն ունի սուր:
Երբ պարում են նուրբ մատները,
Շարժում սիրուն ստեղները,
Իսկույն քույրը մոտ է վազում,
Կանգնում է ու երգ է ասում:
Զրնգում է ձայնը նրա,
Վարդ է բացվում դեմքի վրա:
Տես, երգում է. «Փոքրիկ եմ դեռ»,
Իսկ հետո էլ՝ «Սիրուն թիթեռ»,
Այնպես կայտառ, այնպես ուրախ,
Աչքերի մեջ խինդ ու ծիծաղ.
Թվում է, թե մի վառ գարուն
Ծիտիկի հետ մտել է տուն:

# ԺՈՂՈՎՐԴԻ ԱԶԱՏՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Լ. ԱՍՄԱՐՅԱՆ

(Ֆիլոլոգիական գիտությունների թեկնածու)

Ուստա Ղազարը մեծ ընտանիքի տեր էր։ Կպրավաճառի խանութը, որ բաց էր արել նա, չէր բավարարում մեծ ընտանիքի ապրուստը։ Բայց նա իր տղային ուսման տվեց։



ՄԻՔԱՅԵԼ ՆԱԼԲԱՆԴՅԱՆ

Տղան՝ Միքայելը նիհար, թույլ կազմվածքի տեր, վատառողջ երեխա էր, բայց շատ ժիր էր, սրամիտ, աչքաբաց։ Ութ տարեկան էր նա, որ մի տիրացուի մոտ հայերեն գրել-կարդալ սովորեց։ Հետո սկսեց սովորել հայ նշանավոր բանաստեղծ Ռափայել Պատկանյանի հոր՝ Գաբրիել Պատկանյանի մոտ։ Վեց տարի Նալբանդյանը մնաց այդ դպրոցում։ Երկար գիշերներ նա լուսացնում էր գրքի վրա։

Կարդում էր ճրագի լույսի տակ, ուսումնասիրում հայերենը։ Գրաբար ազատ կարդում և հասկանում էր հայ հին գրողների գործերը, հրաշալի գիտեր հայոց պատմությունը...

Հետո հայրը երեխային հանեց դպրոցից, որ վաճառական դարձնի։ Բայց Միքայելն ո՞ւր, վաճառականությունն ո՞ւր... Միքայելին դրանից հետո ուղարկում են Եգենյանի դպրոցը։ Այդտեղ էլ նրա գիտելիքներին ոչինչ չավելացավ։ Մի օր էլ նա չհամբերեց և ասաց ուսուցչին.

— Ես գիտեմ այն, ինչ դուք գիտեք։

Եվ նրան ազատեցին դպրոցից։ Նա կյանք մտավ։ Նոր Նախիջևանում Նալբանդյանը առաջնորդարանի քարտուղարն էր։ Այդտեղ տասնյոթամյա պատանին այնքան ընդունակ էր, որ միանգամից գրավեց բոլորի ուշադրությունը։

Խալիբյան ազգանունով մի հարուստ տնօրինում էր Նոր Նախիջևան քաղաքին պատկանող կալվածքները։ Նա և իր կողմնակիցները մեծ չարաշահումներ կատարեցին։ Այդ բանի դեմ բողոքեցին քաղաքի առաջադեմ խավերը՝ քաղաքագլուխ Հայրապետյանցի մասնակցությամբ։ Նալբանդյանը միացավ Հայրապետյանցի կողմնակիցներին և նրանց իսկական ղեկավարը դարձավ։ Խալիբյանի մարդիկ սկսեցին հալածել Նալբանդյանին։ Նա փախավ Մոսկվա։ Մոսկվայի Լազարյան ճեմարանում նոր էր աշխատանքի անցել, երբ թշնամիները նրան ձերբակալել տվին։ Բայց մի քանի ամսից հետո ազատվեց։

Մոսկվայում Նալբանդյանը սկսում է ծանոթանալ ռուսական և եվրոպական կուլտուրային, գրականությանը։ Այնտեղ նա սովորում է ֆրանսերեն, լսում դասախոսություններ բժշկության մասին։

Այնտեղ է, որ Նալբանդյանը հայ ուսանողներից խմբակ է կազմակերպում և պայքարում ժողովրդի լուսավորության համար։ Նա միանում է աշխարհաբարի պաշտպաններին և պայքարում գրաբարամոլների դեմ։ Այդ պայքարը քանի գնում սրվում է։ Այդ ժամանակ էր, որ մտածեցին հայերեն ամսագիր հրատարակել։ 1858 թվականին հրա-

տարակվեց բարակ, կապույտ շապիկով մի տետրակ՝ «Հյուսիսափայլի» առաջին համարը։ Ամսագրի խմբագիրը Ստ. Նազարյանն էր, գլխավոր աշխատակիցը՝ Մ. Նալբանդյանը։

Հայ նշանավոր գրող Ղազարոս Աղայանը պատմում է, որ «Հյուսիսափայլի» ընթերցողները անհամբերությամբ էին սպասում Նալբանդյանի գործերին։ «Հյուսիսափայլը» այդքան տարածված ամսագիր դարձավ Նալբանդյանի հոդվածների, ակնարկների, բանաստեղծությունների, վեպի շնորհիվ։ Նալբանդյանը այդտեղ լավագույն ռևոլյուցիոն բանաստեղծություններ գրեց։ Նա առաջին անգամ հայ գրականության մեջ վեպ գրեց քաղաքի և բուրժուազիայի կյանքից։ Նալբանդյանը իր վեպում խարազանում էր հետամնացությունը, տգիտությունը, սնոտիապաշտությունը և պաշտպանում լուսավորությունն ու գիտությունը։ Մեծ գրողը քարոզում էր ազգերի հավասարության և բարեկամության գաղափարները։ Նալբանդյանի ստեղծագործությունների նշանակությունը «Հյուսիսափայլի» կյանքում լավ էր հասկանում ամսագրի խմբագիր Ստ. Նազարյանը։ Եվ ահա այդ էր պատճառը, որ չնայած նա իր հայացքներով շատ էր տարբերվում Նալբանդյանից, բայց ստիպված էր տպագրել նրա գործերը։ Նալբանդյանն էլ խստապահանջ էր իր գործերի նկատմամբ։ Նա հաճախ էր վիճում Նազարյանի հետ.

— Ստեփա՛ն Իսայիչ, թույլ տվեք խնդրեմ, որ իմ մտքերը տպագրվեն այնպես, ինչպես որ նրանք ինքնաբերաբար բխում են։

Նալբանդյանի գործերը անհրաժեշտություն էին, ինչպես մարդու համար օդն ու ջուրը։ Եվ օդի ու ջրի նման մարդիկ էլ կլանում էին նրանց բովանդակությունը։ Պատահել է, որ գրաքննությունն արգելել է Նալբանդյանի ստորագրությամբ հոդվածներ տպագրելը։ Այդ դեպքում նա գրել է կեղծանուններով։ Բայց ժամանակի ընթերցողները շատ լավ գիտեին, որ դրանք գրել է ինքը՝ Նալբանդյանը։

1859 թվականի մարտի 24-ին Նալբանդյանը հրաժեշտ տվեց Մոսկվային և գնաց արտասահման բուժվելու։ Դա, իհարկե, պատրվակ էր. նա առաջին անգամ անձնապես ընկերական ջերմ կապերով է կապվում արտասահմանում գտնվող ռուս ռևոլյուցիոն դեմոկրատների հետ։

Երկրորդ անգամ էլ նա գնաց արտասահման։ Եվ ահա թե ինչու համար։

Հնդկաստանի հայերից մեկը՝ Մասեհ Բաբաջանյանը Նոր Նախիջևան քաղաքին մեծ հարստություն էր կտակել։ Նալբանդյանը 1860 թվականի գարնանը գալիս է հայրենի քաղաք։ Ժողովում, որը ղեկավարում էր Հայրապետյանցը, Նալբանդյանին լիազորում են կտակի գործով գնալ Հնդկաստան։ Նալբանդյանը սկզբում լինում է Պոլսում։ Նրա Պոլիս գնալը մի կատարյալ տոնախմբություն էր։ Այդտեղ նա իր շուրջն է համախմբում հայ առաջադեմ երիտասարդներին և պայքարում խավարամոլների դեմ։ Նրա Պոլիս գալը ողջունում է «Մեղու» թերթի խմբագիր Սվաճյանը և ինքն էլ դառնում նրա զինակիցը։ Նալբանդյանի պատվին հանդես են կազմակերպում և բեմից արտասանում նրա գրվածքները...

— Ազատությո՛ւն,— գոչեցի,
Թող որոտա իմ գլխին,
Փայլակ, կայծակ, հուր երկաթ,
Թող դավ դնե թշնամին։
Ես մինչ ի մահ, կախաղան,
Մինչև մահու անարգ սյուն,
Պիտի գոռամ, պիտ կրկնեմ,
— Անդադար ազատությո՛ւն։

«Ազատություն» բանաստեղծության տողերն անցնում էին շուրթից շուրթ, հուզում մարդկանց, կազմակերպում։ Նալբանդյանի խոսքը լսում էին, քննարկում, տարածում...

Նալբանդյանը սիրում էր շփվել ժողովրդի հետ։ Նա հատկապես այցելել է Ռոստովի շրջակայքի հայկական գյուղերը, ինչպես նաև Հայաստանի՝ Արարատյան դաշտի գյուղերը։ Նա տեսնում էր սքանչելի բնության մեջ ապրող թշվառ գյուղացիներին, նստում նրանց շրջանում, զրուցում, հարցուփորձ անում նրանց կյանքի մասին։ Այդ բոլորը շատ ու շատ նյութ տվեցին նրան իր հայտնի գործերը գրելու համար։ Նա ցույց տվեց, որ գյուղացին հող չունի, իսկ առանց հողի չի կարող իր և ընտանիքի գոյությունը պահպանել։ Դրա համար էլ նա գտնում էր, որ հողը ոչ թե պետք է լինի կալվածատերերի սեփականությունը, այլ անցնի ժողովրդի՝

գյուղացիների ձեռքը... Իսկ գյուղացիները պետք է իրենց բախտը կռեն սեփական ձեռքերով, տապալեն ճորտատերերին: Մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատ Չեռնիշևսկին տեսնելով 1860-ական թվականներին գյուղացիական հուզումներով ալեկոծված Ռուսաստանը բացագանչում էր.

— Կացնից բացի, ոչինչ մեզ չի օգնի:

Նալբանդյանը՝ Չեռնիշևսկու գործի մեծ պաշտպանը, եռանդուն ձևով արձագանքում էր.

— Ստրուկը կացինով կվճռի իր գործը:

Այս հարցերի մասին նա գրեց «Երկրագործությունը որպես ուղիղ ճանապարհ», «Երկու տող», «Հիշատակարաններ», և այլ հրապարակախոսական գործեր: Նալբանդյանը խոշոր, բազմակողմանի զարգացած գիտնական էր: Նա պարզ ու շիտակ բնավորություն ուներ, թեքվել չգիտեր: Խոսքի մեջ կրքոտ էր, ինչպես իր ռուս ուսուցիչները: Նա հեշտությամբ կարողանում էր գտնել հակառակորդի թույլ կողմերը և հարվածել նրան: Նա պաշտպանում էր հասարակ ժողովրդի իրավունքը՝ արծաթի թամբերի տակ անխոցելի մնացած հարուստների դեմ: Այդ նպատակին հասնելու համար չէր վախենում ո՛չ բանտից, ոչ աքսորից: Նա կռվում էր ոչ միայն խոսքով ու գրչով, այլև պատրաստ էր կռվելու զենքով և արյունով:

Նալբանդյանը շատ է աշխատում Պոլսի իր ընկերների հետ: Այնտեղից անցնում է Փարիզ, ապա Լոնդոն: Նալբանդյանը կատարում է իր ռուս բարեկամների՝ Գերցենի, Օգարյովի և մյուսների գաղտնի հանձնարարությունները: Մի քանի անգամ նա Լոնդոնից Փարիզ է անցնում ռևոլյուցիոներների մեջ գաղտնի կապ պահպանելու համար: Նա ձգտում էր Կովկասի ժողովուրդներին ապստամբեցնել և այդ ապստամբությունը կապել ռուս ժողովրդի ապստամբության հետ: Հետո նա գնաց Հնդկաստան, կարողացավ հանձնարարված գործը գլուխ բերել և վերադարձավ: Նախիջևանում նա երկար չմնաց: Երբ նորից եկավ Պետերբուրգ, նրան ձերբակալեցին: Թշնամիները՝ Խալիբյանը և ցարի գործակալ Այվազյանը շատ ուրախացան: Նրանք հեռագրով ողջունում էին միմյանց և խնջույքներ սարքում:

Ահա Պետրոպավլովյան մռայլ ամրոցը: Ահա Ալեքսեևյան ռավելինը, որտեղ բանտարկված էին Չեռնիշևսկին և ուրիշ ռևոլյուցիոներներ: Այդտեղ մի խցում էլ բանտարկեցին Նալբանդյանին:

Ցեմենտե սառը հատակ. մի փոքրիկ լուսամուտ՝ երկաթով պատած: Եթե փակվի լուսամուտը, այդտեղ լույսի նշույլ իսկ չի թափանցի: Մի անկյունում հազիվհազ երևում է երկաթե մահճակալը, իսկ պատի մյուս անկյունում՝ քարե սեղանն է: Այդ մահճակալի վրա էր նա հանգստանում կամ երազում, իսկ սեղանի մոտ նստած գրում էր իր նոր գործերը: Սկզբում նրան արգելում էին կարդալ, գրել, հանդիպել բարեկամների հետ: Բայց բողոքներից հետո նրան թույլատրեցին գրքեր կարդալ, հանդիպումներ ունենալ: Նա իր եղբոր՝ Ղազարոսի միջոցով գրքեր էր պահանջում: Ղազարոսը բերում էր «Վերք Հայաստանին», Սայաթ-Նովայի խաղերը...

Նալբանդյանը բանտում սկսեց նոր լեզուներ սովորել, գրեց քերականության գրքի մի մասը, իր հայտնի «Կրիտիկա «Սոս և Վարդիթերին»: Բայց այդ գիրքը գրաքննությունը դուրս չթողեց և հեղինակը չտեսավ դրա տպագրությունը:

Ցարական կառավարությունը դաժան էր վարվում ռևոլյուցիոն-դեմոկրատների հետ: Ահա կանգնած է Նալբանդյանը ցարական դատարանի առաջ: Այդ դատարանը ժողովրդի համար պայքարող շատ անձնվեր մարդկանց էր դատապարտել մահվան, անլուր տառապանքների՝ հեռավոր աքսորների: Այժմ նա դատում էր ռուս ռևոլյուցիոներ վտարանդիներին, նրանց թվում և Նալբանդյանին:

Հյուծված, մաշված, բայց ճակատը բաց կանգնած է Նալբանդյանը և անշփոթ, անդող պատասխանում է տրված հարցերին: Նա չի վախենում: Նա չի մատնի ընկերներին: Հարցաքննությունը վերջացնելուց առաջ քննիչ հանձնաժողովի նախագահը հարցրեց.

— Պնդո՞ւմ եք արդյոք դուք հանձնաժողովին տված բացատրությունները...

— Ինչ ցույց տվել եմ առաջ, նույնը հիմա էլ պնդում եմ,— աներեր պատասխանեց Նալբանդյանը:

*Երկու տարի տասը ամիս բանտարկությունից հետո որոշեցին Նալբանդյանին աքսորել։ Ցարը հաշվի չառավ նրա հիվանդությունը, դիմումները... 1865 թվականի դեկտեմբերին նա աքսորվեց Սարատովի նահանգի Կամիշին քաղաքը։ Նրա ուժերն արդեն սպառվել էին։ Խնամքից զրկված մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատը մեռավ մենակության մեջ՝ 1866 թվականի մարտի 31-ին։*

*Մեծ դժվարությամբ հաջողվեց նրա դիակը Նոր Նախիջևան տեղափոխել։ Ժողովուրդը սգում էր իր զավակի մահը։ Նրա թաղման հուղարկավորությունը վերածվեց կառավարության դեմ ուղղված ցույցի. շատերին ձերբակալեցին, հալածեցին...*

*Հարուստ է մեծ ռևոլյուցիոն-դեմոկրատի կյանքը, հարուստ և ուսանելի։ Այդ կյանքն այրվեց և լույս տվեց ժողովրդին։ Նա պայքարում էր ժողովրդի ազատության և ապագայի համար։ Նրա թողած հարուստ ժառանգությունը մեզ բոլորիս է պատկանում։*

# ՄԱՏԵՆԱԴԱՐԱՆՈՒՄ

*Վ. ԽԵՉՈՒՄՅԱՆ*

*Ֆոտո՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

*Թերթ թերթի հետևից, շոր խշխշոցով ետ են ծալվում ձեռագրերը և պատմում են, պատմում ժողովրդի ու իրենց մասին։ Նրանցից մեկի եզրերին երևում են այրվածքի հետքեր, ասես դեռ շարունակվում է այրվել միջնադարյան հրկիզված գրադարանի ծխացող բոցերի մեջ... Մյուսը մի կողմից հատված է սրով։ Օտարերկրյա զավթիչի կատաղությանը զոհ է դարձել և գիրքը։ Երրորդի վրա չորացել է արյան մի բիծ...*

*Դեղնած մագաղաթի մի թերթ, որի վրա դեռ հստակ կարդացվում են հնագույն հայերեն գրեր, հենց հազար հինգ հարյուր տարեկան է։ Դա մի ժամանակ ապրող գրքի մնացորդն է՝ միայն երկու թերթ։ Սրա մոտ մի ուրիշ ձեռագիր գիրք, որի վերջին էջում գրված է նրա ծննդյան թվականը՝ 887։ Սա մեզ հասած ամենահին հայերեն ձեռագիրն է։*

*Ուշադրություն է գրավում թանաքից մասամբ քայքայված, թղթի վրա գրված մի ձեռագիր։ 972։ Դա ձեռագիրը գրելու ժամանակն է։ Սա է Սովետական Միության մեջ ու Եվրոպայում պահպանված թղթի վրա գրված ամենահին ձեռագիրը։ Դրանից միայն երկու հարյուր տարի հետո թուղթը մտավ Եվրոպա։*

*Ինչպիսի՜ ձեռագրեր ասես չկան մետաղե այս պահարաններում։ Հապա մի փորձեք բարձրացնել 1205 թվականին գրված մագաղաթե հսկայական ձեռագիրը։ Չեք կարողանա։ Վեց հարյուր յոթ ոչխար են մորթել և յուրաքանչյուրի մորթուց մագաղաթի մի թերթ պատրաստել այս ձեռագրի համար։ Նրա քաշը 32 կիլոգրամ է։*

*Եվ մինչ հիացած նայում ես հսկա ձեռագրին, նկատում ես մի ուրիշը, լուցկու տուփից էլ փոքր մի գիրք, որ դրված է այս գրքի վրա։ Ափի մեջ կորչում է 19 գրամ ծանրություն ունեցող այս փոքրիկ ձեռագիրը։ Նա գրված է այնպիսի մանր, մարգարտաշար տառերով, որ կարդալու համար անհրաժեշտ է խոշորացույցի օգնությանը դիմել։*

*Ձեռագրերի մեծ մասը նկարազարդված է։ Շողշողատում են ոսկին, մուգ երկնագույնը՝ լաջվարդը, «որդան կարմիրը», կանաչն ու կապույտը՝ ծիածանի բոլոր նրբերանգները, մերթ ուշադրություն են գրավում զարդարուն խորանների կողքին թեքված սիրամարգերն ու կաքավները, աքաղաղներն ու մանրիկ, անծանոթ թռչունները, մերթ գազանների ճկուն մարմինները, հովազը, որ ժանիքներով հոշոտում է ծնկաչոք ընկած եղնիկի պարանոցը... Հետո զարմացնում են բույսերի, ծաղիկների բազմատեսակ ու կախարդական զարդերը, որոնք միշտ թարմ են, միշտ նոր, ամեն մի էջում անկրկնելի։ Ձեռագրերի լուսանցքներում, ինչպես բանուկ ճանապարհների վրա, նստած են կույր մուրացկաններ և սպասում են, որ անցորդներից մեկը մի դրամ նետի նրանց առջև դրված պղնձե հին թասի մեջ։ Այստեղ հանդիպում ենք միջնա-*

դարյան զենքերի նկարների, երաժշտական գործիքների, կառուցվածքների, շվի փչող հովիվների ու զինվորների, պատմական անձանց դիմանկարների, ինքնանկարների...

Երեք հարյուրից ավելի միջնադարյան մանրանկարիչների անուններ են հասել մեզ, բայց հազարավորների անունները մնացել են անհայտության գրկում: Տասներեքերորդ դարում ապրող նկարիչ Թորոս Ռոսլինի համարձակ, կենսալի գործերը միջնադարյան գեղանկարչության մեջ իրական կյանքի պատկերման առաջին նմուշներն են: Նշանավոր նկարիչներ են՝ Սարգիս Պիծակը, Մոմիկը, Ծերուն ծաղկողը, Հակոբ Ջուղայեցին և շատ ուրիշները:

Հազարավոր ձեռագրեր պատմում են մեր և հարևան ժողովուրդների կյանքի մասին, ինչպես և այնպիսի ժողովուրդների մասին, որոնք այժմ նույնիսկ գոյություն էլ չունեն: Տասնյակ օրինակներով պահվում են այստեղ հինգերորդ դարի պատմիչ Մովսես Խորենացու Հայոց պատմությունը, Եղիշեի, Սեբեոսի, Գանձակեցու, Թովմա Մեծոփեցու և շատ շատերի պատմական աշխատությունների ձեռագրի օրինակները: Նրանցից ոմանք գրել են ռուսների, վրացիների, ադրբեջանցիների, լեհերի ու ռումինների, աբխազների ու այլ ժողովուրդների մասին:

Թվաբանության մի գրքի առաջին էջերը աղյուսակապատված են, վանդակների մեջ գրված են ինչ-որ տառեր: Դրանք թվեր են, որ գրել է յոթերորդ դարի նշանավոր մաթեմատիկոս Անանիա Շիրակացին: Սա նրա կազմած թվաբանության առաջին դասագիրքն է, առաջին անգամ ստեղծված թվաբանական չորս գործողությունների նշանավոր աղյուսակը:

Այստեղ են պահվում միջնադարյան հայ բանաստեղծների երկերը՝ Ֆրիկի ոտանավորները, գուսանական տաղերը, նովելներ ու առակներ, հանելուկներ ու երգեր: Հարյուրների են հասնում բժշկական, բնագիտական, քիմիական, փիլիսոփայական, աստղաբաշխական և զանազան գիտությունների մասին գրված ձեռագրերը: Գրում էին, թարգմանում, հավաքում էին հին ռուսերեն, վրացերեն, ադրբեջաներեն, հնդկերեն և այլ լեզուներով ձեռագրեր:



Մատենադարանի նոր շենքը:

Արտագրողներին կոչում էին գրիչ: Շատ ծանր էր նրանց աշխատանքը:

Նստած է գրիչը մութ ու խոնավ խցում: Թույլ վառվում է ձեթի ճրագը, ավելի շատ մուր, քան լույս տարածելով շրջապատում: Եթե ամառ է, գրչին տանջում է շոգը, փոշին: Եթե աշուն է կամ ձմեռ, երթիկից ներս է թափվում ձյունը, անձրևը: Մի անկյունում ընկած է ջրի կուլան, թափված են չորացած հացի կտորներ: Փոքրիկ սեղանի վրա դարսված են գրչի գործիքները՝ մկրատ, դանակ, թանաքաման, եղեգե ձողիկներ, թուղթ կամ մագաղաթ: Եվ գրիչը, սրելով եղեգի ծայրը, տառ առ տառ արտագրում է մի հաստափոր ձեռագիր: Նա բողոքում է, որ լավ չի կոկած թուղթը, մագաղաթը յուղոտ է ու դժվարացնում է գործը: Նրան խանգարում են ճանճերն ու մկները, տանջում է քաղցն ու ապրելու հոգսը, վախեցնում է այն միտքը, թե ներս կխուժեն օտար զինվորները և ձեռագիրը կմնա անավարտ...

Անցնում է ժամանակը, ամիս ամսվա հետևից, տարի տարվա հետևից և մեծ դժվա-

րություններ կրելուց հետո գրիչն արտագրում, ավարտում է... մի ձեռագիր:

Հետո ձեռագիրն անցնում է նկարազարդող մանրանկարչի՝ ծաղկողի ձեռքը: Եվ նորից գլորվում է նույն ժամանակը, մինչև ծաղկողը ձեռք է բերում կամ պատրաստում իր ներկերը, մինչև զգուշությամբ, լարելով ամեն ուշադրությունը, էջ առ էջ զարդարում է ձեռագիրը, ոսկեպատում գլխատառերը, ստեղծագործում հարյուրավոր նկարներ ու զարդեր: Գիրքը կաշեպատում է կազմարարը:

Դարեր են անցնում, ձեռագիրն ընկնում է ձեռքից ձեռք, գրադարանից գրադարան, երկրից երկիր: Գալիս են օտարերկրյա զավթիչները և գյուղերի ու քաղաքների հրապարակներում այրում հազարավոր ձեռագրեր, թալանում, տանում իրենց հետ:

Որքան ձեռագրեր կան, որոնց վիճակվել է այս դաժան բախտը:



Միջնադարյան ձեռագրի մի էջ:

Մեկ արդեն ծանոթ 1205 թվականին գրված հսկա ձեռագիրը մի քանի անգամ եղել է «գերության» մեջ, մի քանի անգամ վերադարձել է «գերությունից»: Եվ միայն Հայաստանում սովետական կարգեր հաստատվելուց հետո, մի ռուս սպայի միջոցով, հայ ժողովրդի ցրված գանձվածների հետ ձեռագիրը վերջնականապես վերադարձել է իր իսկական, ազատ Հայրենիքը:

Իսկ հիմա, մեր Հայրենիքում, ձեռագրերն ապրում են մի այլ, բոլորովին տարբեր կյանքով, հատուկ հիմնարկում՝ Մատենադարանում: Նրանց պահպանում, խնամում են մասնագետները, նորոգում ու բուժում են հին հիվանդություններից, նորից կենդանություն են տալիս: Մեր երկրի տարբեր ծայրերից Մատենադարան են հաճախում բազմաթիվ գիտնականներ ու մասնագետներ, որոնք մեծ սիրով ուսումնասիրում են հայ ժողովրդի ստեղծած հազար հինգ հարյուր տարվա գրավոր այս հարուստ կուլտուրան:

Ստալինյան պողոտայի սկզբում, սարի վրա բարձրացել է բազալտաշար մի բարձրահարկ ու գեղեցիկ շենք: Դա Մատենադարանի նորակառույց շենքն է:

Մտնում ենք քանդակազարդ շքամուտքով: Մեր ոտքերի տակ, ներքևի հարկերի սրահները առանձնացված են ձեռագրերի ու արխիվի պահպանման համար: Այստեղ տարվա բոլոր եղանակներին պահպանվելու է ջերմության և խոնավության միևնույն անհրաժեշտ աստիճանը, մշտապես մաքուր օդ են ստանալու ձեռագրերը:

Ճարտարապետները ավարտում են ցուցահանդեսային և գիտական նիստերի դահլիճների ներքին աշխատանքները: Դահլիճների պատերը զարդարվելու են որմնանկարներով, բազմաթիվ խորաքանդակներով: Դահլիճների միջև ընկած սյունազարդ սրահն ու մարմարե աստիճանները լուսավորված են միքանի հարկ բարձրություն ունեցող մեծ լուսամուտով: Լուսամուտի ապակիները մանրանկարչական, գունավոր զարդեր են ունենալու:

Մյուս հարկում կառուցված են գիտական աշխատողների առանձնասենյակները: Աշխատելուց հետո կարելի է դուրս գալ մի փոքրիկ պատշգամբ և հանգստանալ, դիտելով Երևանյան գեղեցիկ տեսարանները:

Ավելի վերևում գտնվում է գիտական սպասարկման կամարակապ, առաստաղային առատ լույսով հեղեղված մեծ դահլիճը, որ-

տեղ ուսումնասիրվելու են ձեռագրերը: Նույն հարկում են հայագիտական նյութերի կաբինետը, նիստերի կլոր դահլիճը, որը նույնպես առատ լույս է ստանում թե՛ կամարակապ լուսամուտից, թե՛ առաստաղից: Ամենավերին հարկում կառուցվել են Մատենադարանի բաժինների աշխատանքային սենյակները, լաբորատորիաները...

Մատենադարանի նոր շենքում ձեռագրերը բոլոր անհրաժեշտ պայմանները կունենան ապագայում իրենց հետաքրքրական կյանքը շարունակելու համար:




## ՍՐՏԱՌՈՒՉ ԽՈՍՔԵՐ

Երեխանե՛ր, եթե դուք լինեք Երևանի Բելինսկու անվան միջնակարգ դպրոցում, ապա պիոներական սենյակի մի անկյունում տեղավորված և ճաշակով պատրաստված փոքրիկ սեղանի վրա կտեսնեք զանազան ալբոմներ: Դրանք առաջին իսկ հայացքից կգրավեն ձեր ուշադրությունը:

— Երևի նկարներ են,— կմտածեք դուք և ակամայից կսկսեք թերթել դրանք:

Ձեր առաջ կբացվեն խնամքով դասավորված, տարբեր ձեռագրերով ու լեզուներով գրված նամակներ: Այդ նամակները դրուժինայի պիոներները ստացել են իրենց արտասահմանյան փոքրիկ բարեկամներից՝ Չինաստանի, Բուլղարիայի, Լեհաստանի, Ալբանիայի և շատ այլ երկրների պատանիներից:

Անցյալ տարի պիոներական դրուժինայի վերընտրական հավաքույթի ժամանակ առաջարկություն արվեց նամակագրական կապ հաստատել մեր հայրենիքի ազատության ու երջանկության համար զոհված պատանի հերոսների ծնողների հետ: Այդպես էլ եղավ: Եվ ահա այդ ալբոմներից մեկում դուք կտեսնեք նամակներ Պավլիկ Մորոզովի, Օլեգ Կոշևոյի, Վոլոդյա Դուբինինի և շատ-շատերի ծնողներից:

Մենք տպագրում ենք Պավլիկ Մորոզովի և Վոլոդյա Դուբինինի մայրերի նամակները:



Պ. Մորոզով
Հերոս պիոներ, որին սպանել են կուլակները:

*Ողջույն Ղրիմից:*

*Թանկագին երեխանե՛ր, ընդունեցեք իմ ջերմագին բարևները: Գրում է ձեզ Տատյանա Սեմյոնովնա Մորոզովան: Հայտնում եմ, որ ձեր նամակը ստացել եմ և սրտանց շնորհակալ եմ: Շտապում եմ պատասխանել:*

*Սիրելի երեխանե՛ր, ես չափազանց ուրախ եմ և շատ եմ հարգում այնպիսի երեխաների, ինչպիսին դուք եք: Ես այսօր Պրագայից և Սոֆիայից ստացել եմ 18 նամակ: Սիրելիներս, դուք լավ նամակներ եք գրում: Դուք խնդրում եք, որպեսզի ես ձեզ հաճախ գրեմ, բայց չէ՞ որ ես դժվարանում եմ: Ես խնդրում եմ կողմնակի մարդկանց, որպեսզի նրանք գրեն: Այդ պատճառով էլ դուք իմ նկատմամբ պետք է ներողամիտ լինեք: Ես լավ եմ ապրում: Ինձ այցելում են երկրի բոլոր կողմերից:*

*Փոքրիկներս, ցանկանում եմ, որ դուք հաջողությամբ վերջացնեք ուսումը և դառնաք կոմունիզմի անվեհեր մարտիկներ:*

*Առայժմ ցտեսություն։*
*Ջերմագին ողջույններով ձեր՝ Տատյանա Սեմյոնովնա Մորոզովա։*
*Նամակը գրել է 5-րդ դասարանի աշակերտուհի Մարիան։*

Հասցեն՝ Ղրիմ, քաղաք Ալուպկա, Սևաստոպոլի փող. № 4, Մորոզովա Տ. Մ.

*4/3—54 թ.*



Վ. Դուբինին,
Պիոներ՝ Սովետական Միության Հերոս, զոհված Հայրենական Մեծ պատերազմում։

*Ահա Վոլոդյա Դուբինինի մոր նամակը.*

*Շնորհավորում եմ ձեր նոր տարին, իմ փոքրիկ բարեկամներ։*

*Ձեր նամակը շատ վաղուց եմ ստացել, բայց ժամանակին պատասխանել չեմ կարողացել, որի համար շատ և շատ ներողություն եմ խնդրում։*

*Ինձ համար հաճելի է կարդալ, որ ձեզ մոտ այդքան լավ է դրված աշխատանքը, չկան ետ մնացողներ։ Կարդում եմ ու հրճվում։ Դա պատիվ է, մեծ, շատ մեծ հպարտություն։ Երեխանե՛ր, ես շատ եմ ցավում, որ չեմ կարող ձեզ ուղարկել այն, ինչ որ դուք ուզել եք, միայն նրա համար, որ ինձ մոտ ոչինչ չի պահպանվել։*

*Այո, ձեր մայրաքաղաքը պատմական քաղաք է, այնտեղից շատ հետաքրքիր տեղեկություններ կարելի է իմանալ։ Իզուր չէ, որ այդքան երգեր են երգվում և՛ Սևանա լճի, և՛ հենց Երևանի մասին։ Թանկագին երեխաներ, իմ շնորհակալությունն եմ հայտնում ինձ հղած ձեր ցանկությունների համար։ Ցանկանում եմ բոլորիդ, բոլորիդ լավ սովորել և լինել այնպիսին, ինչպիսին եղել են ձեր սիրած հերոսները։*

*Սրտագին ողջույնով Եվդոկիա Տիմոֆեևնա Դուբինինա։*

*Ողջույն Վալենտինայից։*

Հասցեն՝—քաղաք Կերչ, Մայիսի 23-ի փողոց, տուն № 56, Դուբինինա Ե. Տ.

*5/1—54 թ.*

# ԵՐԲ ՏԵՂԱ ԱՌԱՋԻՆ ՁՅՈՒՆԸ

*Ռ. ԱԲԱԼՅԱՆ*

*Նկար՝ Մ. ՔՈՉԱՐՅԱՆԻ*

*Հետաքրքիր է իմանալ՝ դուք ձմռանը եղե՞լ եք Սևանում, թե ոչ։ Եթե եղել եք, ապա անշուշտ գիտեք, որ Սևանի ձմեռը երկարատև է, ցրտաշունչ, ձյունառատ։ Գեղամա լեռներից փչում է ցուրտ քամին, ձյան հյուսքերը գալարվում, սուրում են դեպի հարթավայրերն ու ձորակները և ամեն ինչ ծածկում։ Հաճախ այնպիսի բուք ու բորան է բարձրանում, որ քիթդ էլ չես կարող դռնից դուրս հանել։ Բայց Սևանում ապրող պատանիները սիրում են իրենց ձմեռը։ Հենց որ ձյունը նստում է գետնին և սկսում են բքաշունչ օրերը, նրանք խնամքով պահված դահուկները հանում են, յուղում, ամրացնում ոտնակապերը ու վազում դեպի մոտակա բլրակները։ Լավ, շատ լավ պատանի դահուկավորներ կան Սևանում։ Բայց ամենալավ դահուկավորները շրջկենտրոնի № 1 միջնակարգ դպրոցի աշակերտներն են։*

*Հենց անցյալ ձմռանը դպրոցն ուներ պատանի դահուկավորների հիանալի խումբ։*

*Բքաշունչ մի օր, երբ քամին ոռնում էր, և նրա ուժեղ հոսանքից շաչում ու վայում էին էլեկտրալարերը, ֆիզկուլտուրայի դասատու ընկեր Սուրեն Մանուկյանն իր մոտ կանչեց լավագույն դահուկավորներին և ասաց.*

*— Այսօր դուրս կգաք փորձնական արշավի, լա՞վ...*

*Բոլորը համաձայնեցին, բայց ընկեր Սուրենը նկատեց, որ խմբակի ամենափոքր անդամը՝ Վաչիկ Մալխասյանը վարանում է։*

*— Հը՛, Վաչի՛կ, վախենո՞ւմ ես,— ժպտալով հարցրեց ընկեր Սուրենը։*

*— Ոչ, չե՛մ վախենում,— կարմրելով ասաց Վաչիկը,— բայց ախր բուք է, քամին էլ այնքան ուժեղ է, որ...*

*— Հենց այսպիսի եղանակը պետք է հաղ-*

թահարել, թե չէ, պայծառ եղանակին դահուկ վարելը այնքան էլ դժվար գործ չի: Ճի՞շտ է:

Եվ պատանի դահուկավորները դուրս եկան արշավի: Ինչպիսի՜ քամի էր դրսում, ինչպիսի՜ ցուրտ: Ձյունը շերտ-շերտ, ճիշտ Սևանա լճի ալիքների նման, սարալանջերից իջնում էր ցած, խփում դահուկավորների դեմքին, խցկվում օձիք ու գրպան, գլորում թույլերին և մռնչալով փախչում հեռու-հեռու: Բայց ոչ մի բան արդեն չէր կարող ընկճել պատանի դահուկավորների կամքը: Նրանք մագլցում էին սարն ի վեր: Ամբողջ երեք ժամ տևեց, մինչև տղաները հաղթահարեցին վերելքը: Իսկ երբ սկսվեց վայրէջքը, քամին արդեն դադարել էր, մշուշը ցրվել, ու արևն էլ իր ոսկե շողերն էր տարածել ձյան վրա:

Պատանի դահուկավորները հաղթանակով վերադարձան տուն:



Սևանի № 1 դպրոցի սաները առհասարակ հիանալի ֆիզկուլտուրնիկներ են: Էլ ինչ սպորտային խմբակ ասես, որ չկա այստեղ: Դահուկավորների, թեթև և ծանր ատլետների, ֆուտբոլի սեկցիաները գործում են անընդմեջ: Երբ բացվում է գարունը, սկսվում է սպորտային բոլոր սեկցիաների հետաքրքրական ու բազմապիսի աշխատանքը:

Այս տարի էլ գարունը Սևանում սովորականի պես արևի շողով, ծաղիկների բուրմունքով ու թռչունների երգով բացվեց.

— Դե, տղանե՛ր, սկսենք գարնանային մարզումները,— մի օր էլ ասաց ընկեր Սուրենը:

Առաջինը դուրս եկան պատանի ֆուտբոլիստները: Վասիլ Պետրոսյանը, Գրիշա Հովհաննիսյանը և ուրիշներ հանեցին խնամքով պահված հագուստները:

— Ես այս տարի կիսապաշտպան կլինեմ,— հայտարարեց Վասիլը,— հարձակողական գիծը ինձ համար մի քիչ դժվար է:

— Իսկ ես, ընդհակառակը, կլինեմ հարձակվող,— աչքերը կկոցելով ասաց Գրիշան,— հարձակման մեջ և՛ թափ կա, և՛ համարձակություն: Բացի դրանից ես զգում եմ, որ դարբասին ավելի լավ կարող եմ հարվածել, քան պաշտպանվել հարձակումից:



Ֆիզկուլտ դահլիճում:

Ֆիզկուլտուրայի դասատուն լսելով նրանց զրույցը, ասաց.

— Երկուսդ էլ սխալվում եք, սիրելիներս,— իսկական ֆուտբոլիստը՝ լինի նա հարձակվող, թե պաշտպան, պետք է կարողանա և՛ հարձակվել, և՛ պաշտպանվել:

Մարզական պարապմունքներն սկսվեցին: Գարնանային այդ օրերին դասատուն և խաղացողներն աշխատում էին այնպես անել, որ մարզումները դասերին չխանգարեն: Իսկ երբ հաջողությամբ փակվեց ուսումնական տարին, սկսվեցին պատանիների գծով ռեսպուբլիկայի ֆուտբոլային առաջնության մրցումները: Սևանի պատանի ֆուտբոլիստները Նոր Բայազետի թիմից խաղը շահեցին 8 : 0 հաշվով: Մեծ հաշվով նրանք տարան նաև Իջևանի, Ղուկասյանի և այլ շրջանների թիմերին: Ճիշտ է, նրանք ռեսպուբլիկական

մրցումներում գրավեցին 4-րդ տեղը, բայց մի քանի թիմերից ծանր պարտություն կրեցին։ Օրինակ Հոկտեմբերյանի պատանիների թիմը սևանցիներից խաղը շահեց 5 : 2 հաշվով։

— Պարտությունը պատահական չէր,— բացատրեց ֆիզկուլտուրայի դասատուն, մի քանի հաղթանակ տանելուց հետո ձեզանից ոմանք մեծամտացել են, գոռոզացել, դուք մոռանում եք, որ հաղթանակ տանելու համար պետք է ստեղծել ամուր, համերաշխ կոլեկտիվ։ Դուք հաճախ խաղում եք մենակ, ձգտելով մենակ վաստակել գնդակ խփելու կամ հաղթելու «փառքը»։

— Ընկեր Մանուկյանը ճիշտ է ասում,— եզրակացրեց Գրիշան,— այ, հենց դու ինձ պաս չէիր տալիս…

— Իսկ դու տալի՞ս էիր…

— Լավ, բոլորս էլ մեղավոր ենք,— Վասիլը բարկացավ,— վիճելու փոխարեն եկեք այնպես անենք, որ այսուհետև նման դեպք չկրկնվի։

Պակաս հետաքրքիր չէին անցնում նաև մարմնամարզիկների և բասկետբոլիստների մարզումները։

— Էհ, ոչինչ էլ դուրս չի գալիս,— մի օր հուսահատությամբ ասաց Վոլոդյա Հովհաննիսյանը։

— Ճիշտ է,— նրան ձայնակցեց Ռաֆիկ Սահակյանը,— մեզանից բասկետբոլիստ դուրս չի գա։ Ավելի լավ է մասնակցենք մարմնամարզական խմբակի պարապմունքներին։

— Սխալվում եք,— խոսակցությանը միջամտեց Վոլոդյա Խաչատրյանը։— Դժվար ու հեշտ գործեր չկան։ Ամեն ինչ էլ դժվար է, եթե կամքդ թույլ է, եթե չես ուզում դժվարությունը հաղթահարել։ Այ, օրինակ Հրանտ Շահինյանը. նա հո մարմնամարզիկ չի՞ ծնվել. նա շատ է պարապել, հանդիպել է դժվարությունների, բայց հաղթահարել է և ոչ թե մեզ նման հուսահատվել։

— Վոլոդյան ճիշտ է ասում,— համաձայնեց Ռաֆիկը։

— Բացի դրանից,— շարունակեց Վոլոդյան,— թեթև ատլետը պետք է պարապի ամբողջ տարին, իսկ մենք… հենց որ ձմեռը գալիս է, դադարեցնում ենք պարապմունքները…

Ու դրանից հետո պատանի բասկետբոլիստները ավելի մեծ եռանդով սկսեցին մարզումները։ Ճիշտ է, առաջին ընկերական հանդիպումը Նոր Բայազետի պատանիների հետ ավարտվեց սևանցիների պարտությամբ, բայց նրանք չհուսահատվեցին։



Պատրաստվում են ձմռանը։

— Այս պարտությունը,— ասաց Ռաֆիկը,— մեզ հետո հաղթանակ կբերի։

Այժմ Սևանի պատանի ֆիզկուլտուրնիկները պատրաստվում են ձմեռային սեզոնին։ Հենց որ տեղա առաջին ձյունը, նրանք կհագնեն դահուկները։ Հետաքրքիր կլինի տեսնել, թե նրանք ինչպիսի համառությամբ կհաղթահարեն բուքը, ձմռան դժվարությունները։ Չէ՞ որ դժվարությունները հաղթահարելու մեջ է հաղթանակի բերկրանքը։

# ՓՈՔՐԻԿ ԵՐԱԺԻՇՏԸ

ՂԱՐԻԲՅԱՆ

Էդիկը դեռ օրորոցումն էր, երբ մենինգիտով հիվանդացավ. ծանր հիվանդությունը նրան զրկեց տեսողությունից։ Շուտով փոքրիկը կորցրեց նաև լսելու և խոսելու հատկությունները, թեև այն ժամանակ, ինչպես բոլոր փոքրիկները, նա նույնպես խոսելուց առաջ դեռ նոր էր սկսել գեղգեղալ։

— Նա այլևս չի տեսնի պայծառ արևը, չի բլբլա իր թոթով լեզվով, չի լսի իր քույրիկների ջերմ ու փաղաքշական խոսքերը, — վշտացած հառաչում էր մայրը։ Իսկ հայրը վիշտը սրտի խորքում թաքցնելով, մորը սիրտ էր տալիս.

— Կբուժվի, անպայման կբուժվի. ինչեր չեն կարող անել մեր բժիշկները։

Այդ Հայրենական Մեծ պատերազմի առաջին տարին էր. հայրը տնեցիներին հրաժեշտ տվեց, հիվանդանոցում էլ նա համբուրեց երեխային և մեկնեց ռազմաճակատ։

Մայրը մոռանալով ամեն ինչ, կտրելով քունն ու հանգիստը իրեն նվիրում է երեխայի առողջացման գործին, դիմում է բժիշկներին.

— Օգնեցեք իմ Էդիկին։

— Ոչինչ, ոչինչ, մի անհանգստացեք, ձեր երեխան և կլսի և կխոսի, միայն որոշ ժամանակից հետո.— հուսադրում էին բժիշկները։

Եվ սկսվում է հիվանդ երեխայի բուժումը։ Անցնում է չորս-հինգ տարի։ Երբ մայրն ու քույրերը սկսում են միմյանց հետ խոսել, նկատում են, որ երեխան մեկ ուշադրությունը լարում է, մեկ ժպտում, մեկ ծիծաղում։

— Մի գիշեր էլ, երբ մենք քնած էինք,— պատմում է մայրը,— հանկարծ լսեցի մի բարակ ձայն՝ մամա... Իսկույն տեղիցս վեր թռա և աչքիկներիս արթնացրի. ինքս իմ



Էդիկ Պետրոսյանը դաշնամուրի մոտ։

ականջներին չէի հավատում. երբ նրանք արդեն արթնացել էին, նորից լսվեց նույն բարակ ձայնը։

— Էդիկն է, Էդիկն է, նա խոսում է։

Մենք շրջապատեցինք երեխային և ուրախությունից էլ չկարողացանք քնել։ Հիվանդությունից առաջացած ավերածության մեծ մասը վերականգնված էր, գնալով երեխան սկսեց ավելի պարզ խոսել և ավելի լավ լսել, բայց տեսողությունը այլևս չվերադարձավ։ Երբ Էդիկը բավականին կազդուրված էր, մայրը նրա համար գնեց շրթունքի հարմոն։ Էդիկը ժամերով կանգնում էր բարձրախոսի մոտ, լսում, ապա հարմոնը շրթունքներին մոտեցնելով՝ եղանակն ընդօրինակում էր։

Տեսողությունը կորցնելուց հետո, նա ձեռք էր բերել մի ուրիշ հատկություն՝ համարյա թե կրկնապատկվել էր լսողությունը։

Մի օր էլ, նա այդ հարմոնը մի կողմ նետեց և դիմեց մորը.

— Մամա, ինձ համար իսկական հարմոն, ակորդիոն գնիր, սա ի՞նչ է, որ...

Մայրը սիրով կատարեց երեխայի պահանջը։ Գուցե սա է լինելու իր ապագան, թող նվագի, թող սովորի նվագել։

Էդիկը սկսեց և՛ նվագել, և՛ դպրոց հաճախել։

Երրորդ տարին է, որ սովորում է կույրերի դպրոցում։ Նա հավասարապես գրում ու կարդում է թե՛ հայերեն, և թե՛ ռուսերեն։ Շատ գրքեր է կարդացել Էդիկը. օրինակ «Ծերունի խոտատարիչը», «Պատմվածքներ Աֆրիկայի մասին» և այլն, որոնք գրված են ուռուցիկ տառերով։

Այժմ եթե անցնես Միկոյանի պողոտայի № 37 բնակելի նոր շենքի առջևից, դու հաճելի երաժշտություն կլսես։ Չկարծես թե ռադիոընդունիչը կամ բարձրախոսն է նվագում, ոչ։ Այդ վարդագույն շենքի երրորդ հարկի լուսավոր և ընդարձակ բնակարաններից մեկում ապրում է մի փոքրիկ տղա. դա Երևանի Չայկովսկու անվան երաժշտական դպրոցի երկրորդ դասարանի աշակերտ, տասը տարեկան Էդիկ Պետրոսյանն է։ Նրա նուրբ ու ճկուն մատները համարձակ ու վարժ սահում են դաշնամուրի ստեղների վրայով, և նա ձայնակցելով նվագում է ամբողջ սրտով։ Այդ դաշնամուրը նրան նվիրել է Սովետական պետությունը։

Էդիկը թե՛ կույրերի և թե՛ երաժշտական դպրոցում սովորում է միայն գերազանց, նրա ստացած թվանշանները հինգից չեն իջնում։ Բացի լավ սովորելուց, նա գրում է լավ պարեղանակներ ու երգեր։ Բոլորը սիրով են խոսում նրա «Առավոտ» (խոսք՝ Պուշկինի), «Էյ կանաչ ախպեր» (խոսք՝ Հ. Թումանյանի), «Երկու պար», «Զոբանի պատմվածքները» և ուրիշ երաժշտական գործերի մասին։

— Արդեն հայտնի է իմ ապագան, ես որոշել եմ մինչև վերջ սովորել և դառնալ կոմպոզիտոր,— ասում է Էդիկը։

Տպագրում ենք Էդիկ Պետրոսյանի ստեղծագործություններից մեկը, որ կոչվում է «Պար № 2»։

## ՊԱՐ № 2

Allegro

# Ա Շ Ո Ւ Ն

Խոսք՝ Մ. ԿՈՐՅՈՒՆԻ

Երաժշտություն՝ Է. ՌԱՄԱԶՅԱՆԻ

(Պ. Ի. Չայկովսկու անվ. երաժշտական ուսումնարանի աշակերտուհի)














Աշունն եկավ մեզ մոտ ճյուր
Մրգերի կողովն ուսին,
Տանձ ու խնձոր ճաղցրաքույր,
Սերկևիլ, խաղողն ուսին:

Աշունը մեր սիրելի,
Մրգեր բերեց լի ու լի,
Գույներ բերեց բազմերանգ
Ու տքնաջան աշխատանք:

Դեղձը առատ, թուզն առատ,
Սալորն ու ընկույզն առատ,
Գալդ բարի, ով աշուն,
Երևանի ծով աշուն:

## ԱՄԵՆ ԻՆՉԻ ՄԱՍԻՆ

### ՁՈՒԿ ՄԱՔՐՈՂ ՄԵՔԵՆԱ

Ձկնարդյունաբերության գործարանների աշխատանքում ձկան մաքրումը ձկնաթեփից միշտ եղել է ամենադժվար հարցերից մեկը: Իհարկե, այդ նպատակի համար կան և օգտագործվում են տարբեր սարքավորումներ: Բայց դրանք աշխատում են դանդաղ. մեկ րոպեում մաքրում են 8—10 ձուկ, իսկ որ գլխավորն է՝ ձուկը լրիվ կերպով չեն մաքրում: Այդ պատճառով ձկան լրիվ մաքրումը թեփից կատարվում է ձեռքի լրացուցիչ աշխատանքով: Իսկ դրա համար, պարզ է, որ շատ բանվորներ են հարկավոր:

Վերջերս սովետական կոնստրուկտոր Ա. Ի. Կապուստյանսկին ստեղծեց ձկան թեփամաքրման նոր մեքենա: Նա մեկ րոպեի ընթացքում մաքրում է ավելի քան 40 ձուկ, այսինքն ունի հինգ անգամ ավելի արտադրողականություն, քան մինչև հիմա եղած մեքենաները: Ձկան մաքրումը թեփից կատարվում է այնքան լավ, որ էլ հարկ չի լինում ձեռքի լրացուցիչ աշխատանքի:

Նոր մեքենայի առանձնահատկությունը՝ նրա կառուցվածքի պարզությունն է: Իսկ դա, ինչպես հայտնի է, նրա անխափան աշխատանքի գրավականն է: Ահա թե ինչպես է կառուցված և աշխատում այդ մեքենան: Ձուկը տրվում է բարձող մասին: Ձկան պոչից բռնում են սեղմիչները, որոնք ամրացված են մատուցող փոխարկիչին, որը հեծանիվի շղթայի նման տեղավորված է երկու աստղիկների վրա: Ձուկն սկսվում է շարժվել մատուցող փոխարկիչի հետ՝ դեպի առաջ: Ձուկը ավտոմատ կերպով շրջվում է մյուս կողքի վրա և շարժվում է հակառակ ուղղությամբ՝ դեպի բարձող մասը: Այս ճանապարհին արդեն, ձուկը հանդիպում է ներքին փոխարկիչի քերիչներին, որոնք ավարտում են թեփահանման լրիվ աշխատանքը: Մոտենալով բարձող մասին, սեղմիչները բացվում են, և ձուկը ազատ ընկնում է էլևատորի մեջ ու դուրս գալիս մեքենայից: Բեռից ազատված սեղմիչները շարժվելով բարձող մասի մոտով, նոր ձուկ են բռնում:

Մեքենայի մեջ բաց է թողնվում ջրի հոսանք, որը օգնում է մաքրման պրոցեսին և հանված ձկնաթեփը տանում է մեքենայի ներքևի մասում գտնվող արկղիկը: Այստեղ ձկնաթեփը անջատվում է ջրից և ուղարկվում վերամշակման:

## ՀԵՏԱՔՐՔԻՐ ԺԱՄԱՆՑ

### ՀԱՆԵԼՈՒԿՆԵՐ

Կանաչ ուտում է,
Սպիտակ մանում:

Թե՛ մեքենա և թե մայր,
Չավակ ունի անհամար:

Ի՞նչ կենդանի է արդյոք՝
Ունի խոփկ, ունի բոք.
Բնակվել է նա սիրում
Թե՛ ցամաքում, թե՛ ջրում:




### ԵՐԵՔ ՍԵԿՏՈՐ

Շրջանը բաժանված է երեք սեկտորի: Մեկից մինչև 13 թվանշանները տեղավորեցեք այս 13 շրջանակնե-րում այնպես, որ ամեն մի սեկտորի մեջ գտնվող 7 շրջանակների թվերի գումարը հավասար լինի 40-ի:

*Կազմեց՝* Գ. ԳԱՍՊԱՐՅԱՆ

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ

1. Մեր գերբը — Ս. ՄԱՐՇԱԿ
2. Կամոն մախսատան պետ — Մ. ԿՈՐՅՈՒՆ . . 2
3. Իմ փամփշտակալի պատմությունը — Լ. ՀՈՒՐՈՒՆՑ . . . . . . . . . . 5
4. Սովետական երկրի սիրտը — ՒՈՀԱՆՆԵՍ ԲԵԽԵՐ . . . . . . . . . 8
5. Առանց կոմունիստների չկա Չինաստան — ՎԱՆ ՍՅՈՒԽ-ԲՈ . . . . . . . 8
6. Խաղաղություն — ՊԵՏԵՐ ԿՈՒՑԿԱ . . . 8
7. Աքաղաղի կատար — Շ. ԹԱԹԻԿՅԱՆ . . 9
8. Հովազաձորի գերիները — Վ. ԱՆԱՆՅԱՆ . 12
9. Նոր դպրոցը — Ա. ՄԱՐԳԱՐՅԱՆ . . . 15
10. Բերքի տոնը — Ս. ՍԱՐԳՍՅԱՆ . . . . 15
11. Շատ եմ — Վ. ՏԱԼՅԱՆ . . . . . 18
12. Համերգ — Պ. ԽԱՉԱՏՐՅԱՆ . . . . 18
13. Ժողովրդի ազատության համար — Լ. ԱՍՄԱՐՅԱՆ . . . . . . . 19
14. Մատենադարանում — Վ. ԽԵՉՈՒՄՅԱՆ . . 22
15. Դրուժինաներում, ջոկատներում, օղակներում 25
16. Երբ տեղա առաջին ձյունը — Ռ. ԱԲԱԼՅԱՆ . 26
17. Փոքրիկ երաժիշտը — Ռ. ՂԱՐԻԲՅԱՆ . . . 29
18. Աշուն — Է. ՌԱՄԱԶՅԱՆ . . . . . . 31
19. Ամեն ինչի մասին . . . . . . . . 31
20. Հետաքրքիր ժամանց . . . . . . 32
21. Մեր օրացույցը

*Շապիկը՝ նկ.* ԱՆ. ԳԱՍՊԱՐՅԱՆԻ



*Խմբագիր՝* ՏԱԼՅԱՆ Վ.
*Խմբագրական կոլեգիա՝* ԱՆԱՆՅԱՆ Վ., ԲԱԲԱԽԱՆՅԱՆ Վ., ԽԱՉԱՏՐՅԱՆ Հ. ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ Ս., ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ Պ., ՍԱՀԻՆՅԱՆ Ա., ՍՏԵՓԱՆՅԱՆ Ս., ՕՀԱՆՅԱՆ Ա.

„Пионер" на армянском языке. Адрес редакции: Ереван, ул. Маркса 21.
*Հասցեն՝ Երևան, Մարքսի փողոց № 21, հեռախոսներ՝ 2-44-83, 2-59-06*

*ՎՖ 13486: Պատվեր 1341: Տիրաժ 5000: Տպագրական 2½ մամուլ: Ստորագրված է տպագրության 27/X 1954 թ.:*

*Գլխհրատի № 1 տպարան, Երևան, Ալավերդյանի փող. № 65, 1954 թ.:*

# ՊԻՈՆԵՐՆԵ՛Ր ԵՎ ԴՊՐՈՑԱԿԱՆՆԵ՛Ր

«Պիոները» գրական-գեղարվեստական պատկերազարդ մանկական ամսագիր է: Նա նպատակ ունի պիոներներին և դպրոցականներին դաստիարակելու հայրենասիրության, աշխատասիրության, Կոմունիստական պարտիայի մեծ գործին նվիրված լինելու ոգով: Պատկերել պիոներական կյանքը իր բոլոր կողմերով, ցույց տալ սովետական երեխաներին ուսման, աշխատանքի, հանգստի ժամանակ, նկարագրել նրանց վարքը դպրոցում, տանը, փողոցում և հասարակական այլ վայրերում,— այս է ամսագրի խնդիրը: Գեղարվեստական գրվածքների, ակնարկների, գիտական և այլ զրույցների, գրքերի մասին գրած տեղեկությունների միջոցով ամսագիրն աշխատում է երեխաների սրտերում բորբոքել ձգտումը դեպի գիտության բարձունքները՝ մեծ Հայրենիքի արժանավոր քաղաքացիներ դառնալու համար: Պատանի թղթակիցների նամակների միջոցով «Պիոներն» աշխատում է իր ընթերցողներին ծանոթացնել պիոներական առօրյայի հետ:

Ամսագիրը ավագ ջոկատավարների, ջոկատավարների և պիոներական ակտիվիստների համար մի ձեռնարկ է աշխատանքն ավելի բովանդակալից ու հետաքրքիր դարձնելու գործում: Նա տարրական և ոչ լրիվ միջնակարգ դպրոցների դասատուների օգնականներից մեկն է:

Ավելի ակտիվ ընթերցող, իսկ հետագայում թղթակից լինելու, ամսագիրն անխափան ստանալու և ամբողջ տարվա կոմպլեկտը լրիվ ունենալու համար՝ անհրաժեշտ է «Պիոներին» բաժանորդագրվել մեկ տարով:

Արդեն բացված է ամսագրի 1955 թվականի բաժանորդագրությունը և շարունակվելու է մինչև 1954 թվականի դեկտեմբերի 15-ը:

Բաժանորդագրվել կարելի է Սոյուզպեչատի բաժանմունքներում, կապի գրասենյակներում, բոլոր բաժանմունքներում և գործակալություններում, գործարաններում, ֆաբրիկաներում, դպրոցներում, կոլտնտեսություններում և սովխոզներում՝ մամուլի հասարակական լիազորների միջոցով:

### ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՈՒԹՅԱՆ ՊԱՅՄԱՆՆԵՐՆ ԵՆ

| | |
|---|---|
| 12 ամիսը | 24 ռուբլի. |
| 9 ամիսը | 18 ռուբլի. |
| 6 ամիսը | 12 ռուբլի. |
| 3 ամիսը | 6 ռուբլի. |

Երկար ժամանակով բաժանորդագրվելն ապահովում է ամսագրի լրիվ կոմպլեկտի ստացումը:

## ՇՏԱՊԵՑԵ՛Ք ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵԼ:

## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք, ՄԵԿ ՏԱՐՈՎ:
## ԲԱԺԱՆՈՐԴԱԳՐՎԵՑԵ՛Ք, ԿԱՐԴԱՑԵ՛Ք, ՏԱՐԱԾԵՑԵ՛Ք ԱՄՍԱԳԻՐԸ:

**ՍՈՅՈՒԶՊԵՉԱՏ**



# ՄԵՐ ՕՐԱՑՈՒՅՑԸ



## Բ. Մ. Կնունյանց

Բոգդան Միրզաջանի Կնունյանցը մարքսիստ-լենինյանների ավագ սերնդի ներկայացուցիչներից է: Նա իր ամբողջ կյանքը նվիրեց բանվոր դասակարգի և գյուղացիության ազատագրման գործին:

Կնունյանցը ծնվել է 1878 թվականի նոյեմբերի 26-ին Լեռնային Ղարաբաղի Ջամիար գյուղում: Շուշի քաղաքի ռեալական դպրոցն ավարտելուց հետո նա մեկ տարի ապրում է Թբիլիսիում: Այստեղ տասնյոթամյա պատանին ագահաբար կարդում է Մարքսի և էնգելսի մի շարք աշխատություններ, որոնք վճռական դեր են խաղում նրա կյանքում: 1896 թվականին Կնունյանցը մեկնում է Պետերբուրգ և ընդունվում տեխնոլոգիական ինստիտուտը: Կարճ ժամանակից հետո նա դառնում է ուսանողական ռևոլյուցիոն կազմակերպության անդամ: Ցարական կառավարության դեմ ուղղված քաղաքի ցույցերին մասնակցելու համար ոստիկանները ձերբակալում են նրան: Բայց նրանք չեն կարողանում մարքսիստ Կնունյանցին ետ պահել իր ընտրած ճանապարհից. նա չի դադարեցնում ռևոլյուցիոն աշխատանքը: Շուտով Կնունյանցը ընտրվում է Պետերբուրգի ուսանողական ռևոլյուցիոն կազմակերպությունների բյուրոյի անդամ և ակտիվորեն մասնակցում ուսանողական երույթների կազմակերպման աշխատանքներին:



1899 թվականին ռևոլյուցիոն աշխատանքի համար Կնունյանցին վտարում են ինստիտուտից: Նա ավելի մեծ եռանդով նվիրվում է ռևոլյուցիոն գործին:

Երկու տարի հետո ոստիկանները ձերբակալում են Կնունյանցին և աքսորում Պետերբուրգից: Գալով Բաքու նա ստեղծում է լենինյան ուղղություն ունեցող մարքսիստական խմբակներ, գրում է թռուցիկներ, հոդվածներ:

Պարտիայի Կենտկոմի հատուկ հանձնարարությամբ Կնունյանցը տեղափոխվում է Մոսկվա:

1905 թվականին մի շարք նշանավոր ռևոլյուցիոներների հետ Պետերբուրգում ձերբակալում են և Կնունյանցին: Մեկ տարի բանտում պահելուց հետո նրան դատապարտում են ցմահ աքսորի: Երեք ամսից հետո Կնունյանցը փախչում է աքսորավայրից, մեկնում արտասահման, ապա վերադառնում է հայրենիք: Թաքնվելով ցարական կառավարության հետապնդումներից, նա շարունակում է ռևոլյուցիոն աշխատանքը:

1910 թվականին ոստիկանությանը հաջողվում է նորից ձերբակալել անձկուն ռևոլյուցիոներին: Նրան սպառնում էր տաժանակրություն և ցմահ աքսոր: Ցարական կառավարությունը դեռ չէր կայացրել իր դատավճիռը, երբ Կնունյանցը հիվանդացավ տիֆով և 1911 թվականի մայիսի 14-ին մեռավ բանտի հիվանդանոցում, ընդամենը 33 տարեկան հասակում:

## Ռուս մեծ առակագիրը

Ամռան օրերին ճպուռը թռչկոտում է դես ու դեն և հոգ չի տանում ձմռան պաշար հավաքելու մասին: Գալիս է ձմեռը և ամեն ինչ ծածկվում ձյան տակ: Ճպուռը չունի ո՛չ ուտելիք և ոչ էլ բնակարան: Ցրտից ու սովից չմեռնելու համար նա գնում է մրջյունի մոտ և խնդրում, որ իրեն տեղ տա և կերակրի մինչև գարուն:

Դժվար է գտնել մի դպրոցական, որն անգիր չգիտենա «Ճպուռն ու մրջյունը» առակը: Այս հանրածանոթ ստեղծագործության հեղինակն է ռուս մեծ առակագիր Կռիլովը:

«Ճպուռն ու մրջյունը» առակի միջոցով Կռիլովը ծաղրում է ծույլերին, որոնք չեն մտածում վաղվա մասին, ապագայի մասին և գովերգում է աշխատասեր ու ժրաջան մարդկանց: «Կարապը, խեցգետինը և գայլաձուկը» առակում Կռիլովը ցույց է տալիս, որ երբ ընկերների մեջ չկա համերաշխություն, նրանք չեն կարող նույնիսկ մի սայլ շարժել տեղից: Բազմաթիվ առակներում Կռիլովը գովերգում է ազնիվ ու արդար աշխատանքը: Ընթերցողները մեծ սիրով են կարդում «Գայլն ու գառը», «էշն ու սոխակը», «Խոզն ու ագռավը», «Աշխատասեր արջը» և բազմաթիվ այլ առակներ:



Կռիլովն իր առակներով միշտ եղել է մանուկների բարեկամն ու սիրելին: Նրա առակները լույս են տեսել ավելի քան 53 լեզվով:

Ի. Ա. Կռիլովը ծնվել է 1769 թվականին աղքատ զինվորականի ընտանիքում: Նա տասնմեկ տարեկան էր, երբ մեռավ հայրը: Կռիլովը ստիպված էր կիսատ թողնել ուսումը և աշխատանքի անցնել՝ մորն ու փոքր եղբորը օգնելու համար: Ամբողջ տարվա համար նրան վճարում էին ընդամենը 25 ռուբլի: Երկու տարի հետո մեռնում է նաև մայրը և փոքր եղբոր խնամքն ամբողջովին ընկնում է պատանի Կռիլովի վրա: Տասներեքամյա Կռիլովը տեղափոխվում է Պետերբուրգ և շուտով հռչակ ձեռք բերում իբրև գրող: Քսան տարեկան հասակում նա սկսում է հրատարակել ժուռնալ և քննադատել ժամանակի անարդար կարգերը: Հետագայում նա այդ քննադատությունն ավելի ուժեղացրեց իր առակներում:

Կռիլովը չստացավ սիստեմատիկ կրթություն. այդ պակասը լրացնում էր ինքնակրթությամբ: Նա մոլի ընթերցող էր և ունեցել է սովորելու մեծ եռանդ: Այդ հատկությունը նա պահել է մինչև խորին ծերություն:

Նոյեմբերի 21-ին լրանում է Կռիլովի մահվան 110 տարին:

Գինը 2 ռ.



— Ուշադրություն, նկարում եմ։

Ֆոտոէտյուդ՝ Ս. ԽՈՍՐՈՆՎԻ